# 101 ԱԿՆՀԱՅՏ ՀԱԿԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐ ԱՍՏՎԱԾԱՇՆՉՈՒՄ

[ Հայերեն - Armenian – أرميني ]

ՇԱԲԻՐ ԱԼԼԻ

**Թարգմանությունը:**
EUROPEAN ISLAMIC RESEARCH CENTER (EIRC)
& Աննա Ռ. Հակոբ
**Ստուգող համձնաժողով:** Աբու Առամ

2014 - 1435

IslamHouse.com



# 101 ԱԿՆՀԱՅՏ ՀԱԿԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐ ԱՍՏՎԱԾԱՇՆՉՈՒՄ

1. Ո՞վ հրահրեց Դավիթին հաշվել Իսրայելի մարտիկներին:

 **Աստված (Թագավորաց Բ. 24:1)**

“1Տիրոջ բարկութիւնը դարձեալ բորբոքուեց Իսրայէլի վրայ: Նա Դաւթին գրգռեց նրանց դէմ՝ ասելով. «Գնա՛ հաշուառում կատարի՛ր Իսրայէլում եւ Յուդայի երկրում»:

 **Սատանան (Մնացորդաց Ա. 21:1)**

“1Սատանան ելաւ Իսրայէլի մէջ ու դրդեց Դաւթին մարդահամարի ենթարկելու Իսրայէլը:»

2. Ըստ այդ հաշվարկի քանի՞ մարտիկ գտնվեց Իսրայելում:

 **Ութ հարյուր հազար (Թագավորաց Բ. 24:9)**

“9Յովաբը մարդահամարի տուեալները յանձնեց արքային. Իսրայէլն ունէր ութ հարիւր հազար սուսերակիր զինուոր, իսկ Յուդայի երկիրը՝ հինգ հարիւր հազար մարտիկ:»

 **Մեկ միլիոն, հարյուր հազար (Մնացորդաց Ա. 21:5)**

“5Յովաբը Իսրայէլի ժողովրդի մարդահամարի տվեալները յանձնեց Դաւթին: Ամբողջ Իսրայէլում մէկ միլիոն մարդ կար եւ հարիւր հազար սուսերակիր. իսկ Յուդայի երկիրն ունէր չորս հարիւր յիսուն հազար սուսերակիր: »

3. Քանի՞ մարտիկ գտնվեց Յուդայում:

 **Հինգ հարյուր հազար (Թագավորաց Բ. 24: 9)**

“9Յովաբը մարդահամարի տուեալները յանձնեց արքային. Իսրայէլն ունէր ութ հարիւր հազար սուսերակիր զինուոր, իսկ Յուդայի երկիրը՝ հինգ հարիւր հազար մարտիկ:»

 **Չորս հարյուր յոթանասուն հազար (Մնացորդաց Ա. 21:5)**
“5Յովաբը Իսրայէլի ժողովրդի մարդահամարի տվեալները յանձնեց Դաւթին: Ամբողջ Իսրայէլում մէկ միլիոն մարդ կար եւ հարիւր հազար սուսերակիր. իսկ Յուդայի երկիրն ունէր չորս հարիւր յիսուն հազար սուսերակիր:»

4. Քանի՞ սովի տարիներ սպառնաց Դավիթին, Աստծո ուղարկած մարգարեն:

 **Յոթ (Թագավորաց Բ. 24:13)**
“13Գադը եկաւ Դաւթի մօտ, պատմեց ու ասաց. «Ընտրի՛ր որն ուզում ես. կա՛մ քո երկրում երեք տարի սով պիտի լինի, կա՛մ երեք ամիս դու պիտի փախչես քո թշնամիների առաջից, ու քեզ պիտի հալածեն, կա՛մ էլ երեք օր մահ պիտի լինի քո երկրում: Արդ, մտածի՛ր ու ասա՛, թէ ի՞նչ պատասխան տանեմ ինձ ուղարկողին» »

 **Երեք (Մնացորդաց Ա. 21:12)**
“12կա՛մ երեք տարի սով կը լինի, կա՛մ երեք ամիս հալածական կը լինես քո թշնամիներից, եւ քո թշնամիների սուրը քեզ կը սպանի, եւ կա՛մ երեք օր Տիրոջ սուրը մահ կը սփռի քո երկրում, ու Տիրոջ հրեշտակը կը բնաջնջի Իսրայէլի ամբողջ տարածքը: Արդ, տե՛ս, թէ ես ինչ պատասխան եմ տալու նրան, որ ինձ ուղարկել է»:»

5. Քանի՞ տարեկան էր Օրոզիան, երբ նա սկսեց կառավարել Երուսաղեմում:

 **Քսաներկու (Թագավորաց Դ. 8:26)**
“26Երբ Օրոզիան թագաւոր դարձաւ, քսաներկու տարեկան էր: Նա մէկ տարի թագաւորեց Երուսաղեմում: Նրա մայրը Իսրայէլի Ամրի արքայի դուստր Գոթողիան էր:»

 **Քառասուներկու (Մնացորդաց Բ. 22:2)**

“2Օքոզիաս թագաւոր դարձաւ, երբ քսաներկու տարեկան էր: Նա մէկ տարի թագաւորեց Երուսաղէմում: Նրա մօր անունը Գոթողիա էր: Սա Ամրիի դուստրն էր:»

6. Քանի՞ տարեկան էր Յովակիմը, երբ նա դարձավ Երուսաղեմի թագավոր:

 **Տասնութ (. Թագավորաց Դ. 24:8)**

“8Յովաքիմը տասնութ տարեկան էր, որ թագաւոր դարձաւ, եւ երեք ամիս թագաւորեց Երուսաղէմում: Նրա մօր անունը Նեեսթա էր, նա երուսաղէմացի Ելամաթի դուստրն էր:»

 **Ութ (Մնացորդաց Բ. 36:9)**

“9Յովակիմի փոխարէն թագաւորեց իր որդի Յեքոնիաս:»

7. Որքա՞ն նա կառավարեց Երուսաղեմը:

 **Երեք ամիս (Թագավորաց Դ. 24:8)**

“8Յովաքիմը տասնութ տարեկան էր, որ թագաւոր դարձաւ, եւ երեք ամիս թագաւորեց Երուսաղէմում: Նրա մօր անունը Նեեսթա էր, նա երուսաղէմացի Ելամաթի դուստրն էր:

 **Երեք ամիս և տաս օր. (Մնացորդաց Բ. 36:9)**

“9Յովակիմի փոխարէն թագաւորեց իր որդի Յեքոնիաս:

8.Քանի՞ մարդու սպանեց միանգամից Դավթի զորավարը, բարձրացնելով սուրը:

 **Ութ հարյուր (Թագավորաց Բ. 23:8)**

“8Սրանք են Դաւթի զօրավարների անունները. քանանացի Յեբուսթէ՝ նոյն ինքը աառնացի Ադինոն մէկ երրորդ մասի հրամանատար: Սա սուր էր բարձրացրել միանգամից ութ հարիւր զինուորների վրայ:.»

 **Երեք հարյուր (Մնացորդաց Ա. 11:11)**

“11Ահա Դաւթի հզօր մարդկանց անուանացանկն ու նրանց ու թիւը.Աքամանի որդի Իզբաամը՝ երեք զօրավարներից

առաջինը: Սա էր, որ միայնակ իր սուրը բարձրացրեց երեք հարիւր հոգու դէմ եւ նրանց միաժամանակ սպանեց::″

9. Ե՞րբ բերեց Դավիթը Դաշնագրի Տապանը Երուսաղեմ: Յեբուսացիներին հաղթելուց հետո, թե առաջ:

□ **Հետո** (Թագավորաց Բ. 5 և 6)

"[1]Իսրայէլի բոլոր ցեղերը եկան Քեբրոն, Դաւթի մօտ, ու խօսելով նրա հետ՝ ասացին. [2]«Մենք քո ոսկորը եւ քո մարմինն ենք: Անցեալում, երբ Սաւուղը մեր թագաւորն էր, դու էիր իսրայէլացիներին առաջնորդողը եւ ի մի հաւաքողը: Տէրը քեզ ասաց. «Դու պիտի հովուես Իսրայէլի իմ ժողովրդին, դու ես լինելու Իսրայէլի առաջնորդը»»: [3]Իսրայէլի բոլոր ծերերը եկան Քեբրոն, արքայի մօտ, եւ Դաւիթ արքան նրանց հետ ուխտ դրեց Քեբրոնում, Տիրոջ առջեւ: Նրանք Դաւթին թագաւոր օծեցին ամբողջ Իսրայէլի վրայ:[4]Դաւիթը երեսուն տարեկան էր, երբ թագաւոր դարձաւ, եւ քառասուն տարի թագաւորեց.[5]եօթը տարի վեց ամիս թագաւորեց Քեբրոնում Յուդայի երկրի վրայ եւ երեսուներեք տարի Երուսաղէմում՝ ամբողջ Իսրայէլի ու Յուդայի երկրի վրայ: [6]Դաւիթն իր զօրքով գնաց Երուսաղէմ, այդ երկրում բնակուող յեբուսացիների դէմ: Դաւթին ասացին, թէ՝ «Դու այստեղ չես մտնի, քանզի կոյրերն ու կաղերը քեզ դէմ են կանգնել եւ ասում են. «Դաւիթն այստեղ թող չմտնի»»:[7]Դաւիթը գրաւեց Սիոնն ու նրա ամրոցը, որ Դաւթի քաղաքն է: [8]Այդ օրը Դաւիթն ասաց. «Ով որ ուզում է կոտորել յեբուսացիներին, թող սրով յարձակուի կաղերի, կոյրերի եւ Դաւթի անձն ատողների վրայ»: Դրա համար է, որ ասում են. «Կոյրերն ու կաղերը չպէտք է մտնեն Տիրոջ տունը»: ″[9]Դաւիթն ապրեց ամրոցում, եւ այն կոչուեց Դաւթի քաղաք: Նա շուրջանակի, ծայրից ծայր քաղաք շինեց եւ իր համար էլ

տուն կառուցեց։ [10]Դաւիթը գնալով հզօրանում էր, եւ ամենակալ Տէրը նրա հետ էր։[11]Տիւրոսի արքայ Քիրամը դեսպաններ ուղարկեց Դաւթի մօտ, նաեւ եղեւնափայտ, փայտի հիւսներ ու քարի վարպետներ, որոնք Դաւթի համար տուն շինեցին։ [12]Դաւիթը համոզուեց, որ Տէրն է իրեն Իսրայէլի թագաւոր հաստատել եւ իր թագաւորութիւնը բարձրացրել իր ժողովրդի՝ իսրայէլացիների վրայ։[13]Դաւիթը Քեբրոնից Երուսաղէմ գալուց յետոյ ուրիշ կանայք ու հարճեր եւս առաւ։[14]Դաւիթն ուրիշ տղաներ եւ աղջիկներ էլ ունեցաւ։ Երուսաղէմում նրա ունեցած որդիների անունները սրանք են. [15]Սամաաթ, Յեսիբաթ, Նաթան, Գաղամաան, Յեբաար, [16]Թեմեսուս, Եղիփաղատ, Նագեդ, Նափեկ, Յեննաթա, Եղիսամիս, Բաղիգադ եւ Եղիփաղէտ։ [17]Այլազգիները լսելով, թէ Դաւիթը Իսրայէլի թագաւոր է օծուել, բոլորը ելան Դաւթի վրայ յարձակուելու։ [18]Երբ Դաւիթն այդ իմացաւ, իջաւ ամրոցը։ Այլազգիները եկան ու հաւաքուեցին Տիտանների հովիտներում։ [19]Դաւիթը հարցրեց Տիրոջը՝ ասելով. «Յարձակուե՞մ այլազգիների վրայ, նրանց իմ ձեռքը կը մատնե՞ս»։ Տէրն ասաց Դաւթին. «Յարձակուի՛ր, քանզի անպայման քո ձեռքն եմ մատնելու այլազգիներին»։ «[20]Դաւիթն եկաւ Խրամատների վրայից եւ այնտեղ կոտորեց այլազգիներին։ Դաւիթն ասաց. «Տէրն իմ թշնամիներին իմ ձեռքով կոտորեց այնպէս, ինչպէս ջրերն են թմբերը աւերում»։ Դրա համար այդ տեղը կոչուեց Խրամատների վրայ։ [21]Նրանք այնտեղ թողեցին իրենց աստուածներին, եւ Դաւիթն ու իրեն ընկերակցող մարդիկ առան դրանք։ [22]Այլազգիները կրկին ոտքի ելան ու հաւաքուեցին Տիտանների հովիտներում։ [23]Դաւիթը հարցրեց Տիրոջն՝ ասելով. «Յարձակուե՞մ

այլազգիների վրայ, նրանց իմ ձեռքը կը մատնե՞ս»: Տէրն ասաց. «Մի՛ յարձակուիր նրանց վրայ, շրջանցի՛ր նրանց ու նրանց թիկունքից գնա՛ դէպի Լացի անտառը: [24]Երբ Լացի անտառից շարժման ձայն լսես, այն ժամանակ յարձակուի՛ր նրանց վրայ, որովհետեւ այն ժամանակ է, որ Տէրը դուրս է գալու քո առաջ, որ պատերազմում կոտորի այլազգիներին»: [25]Դաւիթն արեց այնպէս, ինչպէս Տէրն էր հրամայել նրան: Եւ նա կոտորեց այլազգիներին Գաբաւոնից մինչեւ Գազերա:
“[1]Դաւիթը կրկին հաւաքեց Իսրայէլի բոլոր երիտասարդներին՝ մօտաւորապէս եօթանասուն հազար հոգի: [2]Դաւիթը, նրա հետ եղած ամբողջ ժողովուրդն ու Յուդայի երկրի իշխաններից ոմանք ելան գնացին այն զառիվերով, որով բարձրացուել էր Աստծու տապանակը, որին տրուած էր զօրութիւնների Տէր Աստծու անունը, եւ որի վրայ նստած է Աստուած քերովբէների միջեւ: [3]Դաւիթը Տիրոջ տապանակը դրեց նոր սայլի վրայ, վերցրեց այն Ամինադաբ Բլրացու տնից:
[4]Ամինադաբի որդիները՝ Օզան ու նրա եղբայրներն էին քշում տապանակը կրող սայլը, իսկ միւս եղբայրները ընթանում էին տապանակի առջեւից: [5]Դաւիթն ու իսրայէլացիները Տիրոջ առաջ տաւիղներ, հնչեղ նուագարաններ, քնարներ, սրինգներ էին նուագում, թմբուկներ, ծնծղաներ զարկում ու փողեր էին հնչեցնում ու երգում: [6]Երբ եկան Ամինադաբի կալը, Օզան իր ձեռքը գցեց Աստծու տապանակին, որ այն բռնի: Նա այն բռնեց, որովհետեւ լծկան զուարակն այն շարժել էր իր տեղից: [7]Տէրը բարկացաւ Օզայի վրայ եւ նրա յանդգնութեան համար հարուածեց նրան այնտեղ, եւ նա մեռաւ այնտեղ, Տիրոջ տապանակի մօտ, Աստծու առջեւ: [8]Դաւիթը տրտմեց, որ Տէրը մահացու հարուածեց Օզային նրա մեծ յանդգնութեան

համար: [9]Այդ տեղը մինչեւ այսօր Օզայի Հարուած է կոչւում: Այդ օրը Դաւիթը վախեցաւ Տիրոջից եւ ասաց. «Տիրոջ տապանակը ինչպէ՞ս մտնի ինձ մօտ»: [10]Դաւիթը չուզեց Տիրոջ ուխտի տապանակը տանել իր մօտ՝ Դաւթի քաղաքը, եւ Դաւիթը, շեղելով ճանապարհը, այն տարաւ գեթացի Աբեդդարի տունը: [11]Տիրոջ տապանակը երեք ամիս մնաց գեթացի Աբեդդարի տանը: Տէրն օրհնեց Աբեդդարին ու նրա ամբողջ տունը: [12]Այդ մասին յայտնեցին Դաւթին՝ ասելով. «Տէրն Աստծու տապանակի համար օրհնել է Աբեդդարի տունն ու նրա ունեցած ամէն ինչը»:Դաւիթը գնաց, Տիրոջ տապանակը հանեց Աբեդդարի տնից եւ ուրախութեամբ բերեց Դաւթի քաղաքը: [13]Տապանակը տանողների հետ գնում էին պարողների եօթը խմբեր, զուարակ ու գառներ էին զոհ մատուցում: [14]Դաւիթը Տիրոջ առաջ տաւիղ էր նուագում: Նա պատմուճան էր հագել: [15]Դաւիթն ու Իսրայէլի ամբողջ տունը Տիրոջ տապանակը հանեցին ուրախութեան աղաղակ արձակելով ու փող հնչեցնելով: [16]Երբ տապանակը Դաւթի քաղաքին մօտեցաւ, Սաւուղի դուստր Մեղքողը նայում էր պատուհանից եւ տեսնելով, որ Դաւիթ արքան Տիրոջ առաջ պարում էր ու նուագարաններ նուագում, արհամարհեց նրան իր հոգում: [17]Տիրոջ տապանակը բերեցին ու դրեցին իր տեղը, վրանի մէջ, որ Դաւիթը դրա համար էր կանգնեցրել:[18]Դաւիթը Տիրոջ առջեւ ողջակէզներ ու խաղաղութեան զոհեր մատուցեց: Երբ Դաւիթն աւարտեց ողջակէզներ ու խաղաղութեան զոհեր մատուցելը, զօրութիւնների Տիրոջ անունից օրհնեց ժողովրդին: [19]Նա Իսրայէլի բոլոր բնակիչներին՝ Դանից մինչեւ Բերսաբէէ, տղամարդկանց թէ կանանց, ամէն մէկին բաշխեց հացի մի բլիթ, կասկարայի վրայ եփուած արմաւով խմորեղէն

եւ չամչով կարկանդակ: Ժողովրդի ամբողջ բազմութիւնը գնացին իրենց տները: [20]Դաւիթը յետ դարձաւ իր տունն օրհնելու. նրան ընդառաջ ելաւ Սաւուղի դուստր Մեղքողը եւ, ողջունելով նրան, ասաց. «Վայե՞լ էր Իսրայէլի արքային, որ այսօր իր աղախինների ու ծառաների առաջ մերկանայ, ինչպէս մերկանում են պարողները»: [21]Դաւիթն ասաց Մեղքողին. «Ես պիտի պարեմ Տիրոջ առջեւ: Օրհնեալ է Տէր Աստուածը, որն ինձ ընտրեց եւ ոչ թէ քո հօրն ու նրա ամբողջ տունը: Նա ինձ Իսրայէլի իր ժողովրդի վրայ առաջնորդ կարգեց: [22]Ահա այդ Տիրոջ առաջ ես պիտի երգեմ ու պարեմ: Եւ դեռ էլ աւելի պիտի մերկանամ, քո աչքին անարգ պիտի երեւամ ու դրանով էլ քո ասած այդ աղախինների առաջ պիտի փառաւորուեմ»: [23]Եւ Սաւուղի դուստր Մեղքողը մինչեւ իր մահուան օրը զաւակ չունեցաւ:

 **Առաջ** (Մնացորդաց Ա. 13 և 14)

“[1]Դաւիթը խորհրդակցեց հազարապետների ու հարիւրապետների եւ բոլոր իշխանների հետ: [2]Դաւիթն ասաց հաւաքուած բոլոր իսրայէլացիներին. «Եթէ գտնում էք, որ սա բարի գործ է ձեզ համար, եւ մեր Տէր Աստուածն է մեզ յաջողութիւն պարգեւել, մարդ ուղարկենք Իսրայէլի բոլոր կողմերում մնացած մեր եղբայրներին, որ իրենց քաղաքներում ու կալուածքներում ապրող քահանաներն ու ղեւտացիները գան մեզ մօտ ժողովի, [3]մեզ մօտ բերենք մեր Աստծու տապանակը, քանզի Սաւուղի ժամանակներից ի վեր այդ հարցով չզբաղուեցին»: [4]Բոլոր հաւաքուածներն ասացին. «Այդպէս անենք». որովհետեւ ժողովուրդն այս խօսքերը արդարացի համարեց: [5]Դաւիթը բոլոր իսրայէլացիներին հաւաքեց Եգիպտոսի սահմաններից սկսած մինչեւ Եմաթ, որ

Աստծու տապանակը տանեն Յարիմ քաղաքից: [6]Դաւիթը հանել տուեց այն, եւ ամբողջ Իսրայէլը գնաց Յուդայի երկրում գտնուող Դաւթի քաղաքը, որ այնտեղից բերեն Տէր Աստծու՝ քերովբէների վրայ տեղադրուած տապանակը: Եւ Տէր Աստծու անունը գրուած է այդ տապանակի վրայ: [7]Աստծու տապանակը դրեցին Ամինադաբի տնից բերուած մի նոր սայլի վրայ, եւ Օզան ու նրա եղբայրները քշում էին սայլը: [8]Դաւիթն ու բոլոր իսրայէլացիները եռանդագին պարում էին Աստծու առջեւ, սաղմոսներ երգելով, տաւիղներով, քնարներով, փողերով, թմբուկներով ու ծնծղաներով: [9]Նրանք եկան մինչեւ Քելոնի կալը, եւ Օզան ձեռքը մեկնեց, որ բռնի տապանակը, որովհետեւ եզը տեղից շարժել էր այն: [10]Տէրը խիստ զայրացաւ Օզայի վրայ ու սպանեց նրան, որովհետեւ համարձակուել էր իր ձեռքը մեկնել տապանակին: Նա տեղնուտեղը մեռաւ Աստծու առաջ: [11]Դաւիթը տրտմեց, քանզի Տէրը մահացու հարուածել էր Օզային: [12]Այդ վայրը մինչեւ այսօր կոչւում է Օզայի հարուած: Այդ օրը Դաւիթը Աստծուց վախենալով՝ ասաց. «Ես ինչպէ՞ս Աստծու տապանակն ինձ մօտ տանեմ»: [13]Եւ Դաւիթը տապանակն իր մօտ՝ Դաւթի քաղաքը չփոխադրեց, այլ ճանապարհը շեղեց ու տարաւ քետացի Աբեդդարի տունը: [14]Աստծու տապանակը երեք ամիս մնաց Աբեդդարի տանը, եւ Աստուած օրհնեց Աբեդդարին եւ այն ամէնը, ինչ նա ունէր:

“[1]Տիւրոսի արքայ Քիրամը Դաւթի մօտ ուղարկեց դեսպաններ, մայրի փայտ, որմնադիրներ ու ատաղձագործներ, որ տուն շինեն նրա համար: [2]Դաւիթը հասկացաւ, որ Տէրն է իրեն ընտրել Իսրայէլի վրայ իշխելու համար, քանզի Իսրայէլի ժողովրդի համար նրա թագաւորութիւնը հզօրացել էր:

[3]Դաւիթն այլ կանայք եւս առաւ Երուսաղէմում, որոնցից ծնուեցին ուրիշ տղաներ ու աղջիկներ: [4]Ահա անունները նրանց, որոնք ծնուեցին Երուսաղէմում. Սամաաս, Սոբաբ, Նաթան, Սողոմոն, [5]Յեբաար, Ելիսաւ, Ելիփաղէտ, [6]Նագեթ, Նափատ, Յափիէ, [7]Ելիսամա, Բաղիադա եւ Ելիփաղատ: [8]Երբ այլազգիներն իմացան, թէ Դաւիթը ամբողջ Իսրայէլի վրայ թագաւոր է օծուել, ելան Դաւթին գտնելու: Դաւիթն այդ լսելով՝ նրանց դիմաց ելաւ: [9]Եկան նաեւ այլազգիները, եւ նրանք միմեանց հանդիպեցին Հսկաների հովտում: [10]Դաւիթն Աստծուն հարցրեց՝ ասելով. «Յարձակուե՞մ այլազգիների վրայ, դու նրանց իմ ձեռքը կը մատնե՞ս»: Տէրը նրան ասաց. «Յարձակուի՛ր, եւ ես նրանց քո ձեռքը կը մատնեմ»: [11]Դաւիթը ելաւ գնաց Բաաղփարասին եւ կոտորեց նրանց: Դաւիթն ասաց. «Աստուած իմ թշնամիներին ջախջախեց իմ ձեռքով, պատառոտեց նրանց, ինչպէս ջրերն են պատառոտւում»: Սրա համար էր, որ այդ տեղը կոչուեց Բաաղփարասին, այն է՝ Փարասինի պատռուածք: [12]Նրանք իրենց աստուածներին այնտեղ թողեցին, եւ Դաւիթը պատուիրեց դրանք հրով այրել: [13]Այլազգիները կրկին յարձակուեցին, եւ նրանք իրար հանդիպեցին Հսկաների հովտում: [14]Դաւիթը դարձեալ հարցրեց Աստծուն, եւ Աստուած նրան ասաց. «Մի՛ գնա նրանց յետեւից, շո՛ւռ արի եւ նրանց թո՛ղ տանձենիների մօտ: [15]Երբ տանձենիների կատարների շարժման ձայն լսես, այն ժամանակ ելի՛ր պատերազմի, քանզի Աստուած քո առջեւից գնալով՝ կոտորելու է այլազգիների բանակը»: [16]Դաւիթն արեց այնպէս, ինչպէս Աստուած պատուիրել էր նրան, եւ նա կոտորեց այլազգիների բանակը Գաբաթոնից մինչեւ Գազերա:

[17]Դաւթի անունն ամբողջ երկրում հռչակուեց, եւ Տէրը նրա երկիւղը տարածեց բոլոր ազգերի վրայ:

10. Աստծո հրահանգով, քանի՞ զույգ անպիղծ կենդանի պետք է տաներ Նոյը տապան:

-  **Երկու (Ծննդոց 6:19, 20 )**

“19Բոլոր կենդանիներից, բոլոր գազաններից ու բոլոր էակներից երկու-երկու կը մտցնես տապան, որ նրանք կերակրուեն քեզ հետ: Թող դրանք արու եւ էգ լինեն: 20Ամէն տեսակ թռչուններից, ամէն տեսակ կենդանիներից, երկրի ամէն տեսակ սողուններից՝ բոլորից երկու-երկու, արու եւ էգ, թող մտնեն քեզ հետ, որ կերակրուեն քեզ հետ:»

-  **Յոթ (Ծննդոց 7:2) Սակայն, չնայած այս վերջին հրահանգի. Միայն երկու զույգ գնացին տապան (Ծննդոց 7:8-9)**

“2Անպիղծ բոլոր կենդանիներից եօթը-եօթը՝ արու եւ էգ, կը մտցնես քեզ հետ, իսկ պիղծ բոլոր կենդանիներից երկու-երկու՝ արու եւ էգ,»

“8Անպիղծ թռչուններից ու պիղծ թռչուններից, երկրի վրայ սողացող բոլոր սողուններից 9երկու-երկու՝ արու եւ էգ, Նոյի հետ մտան տապան, ինչպէս պատուիրել էր նրան Տէր Աստուած:»

11. Երբ Դավիթը հաղթեց թագավոր Զոբահին, քանի՞ ձիավոր նա գերեց;

-  **Հազար յոթ հարյուր (Թագավորաց Բ 8:4)**

“4Դաւիթը նրանից հազար մարտակառք, եօթը հազար հեծեալ ու քսան հազար հետեւակ գերի վերցրեց: Դաւիթը բոլոր մարտակառքերը քանդեց՝ իր համար թողնելով միայն հարիւր մարտակառք:»

-  **Յոթ հազար (Մնացորդաց Ա 18:4)**



“4Նրանից վերցրեց հազար մարտակառք, եօթը հազար ձիաւոր ու քսան հազար հետեւակ: Դաւիթը ջարդեց բոլոր մարտակառքերը՝ թողնելով միայն հարիւր մարտակառք:»

## 12. Որքա՞ն ձի ունէր Սողոմոնը ախոռներում:

□ **Քառասուն հազար** (Թագավորաց Գ 4:26)

“26Սողոմոնն ունէր քառասուն հազար մատակ լծկան ձիեր եւ տասներկու հազար երիվարներ:»

□ **Չորս հազար**. (Մնացորդաց Բ 9: 25)

“25Սողոմոնն ունէր քառասուն հազար մատակ ձիեր մարտակառքերի համար եւ տասներկու հազար երիվարներ: Նա դրանք տեղաւորեց մարտակառքերի համար սահմանուած քաղաքներում. իսկ Երուսաղէմում Սողոմոնի մօտ մնացին որոշ քանակի մատակ ձիեր ու երիվարներ:»

## 13. Արքա Ասայի կառավարման ո՞րերորդ տարում Իսրայելի Արքա Բաասան մահացավ:

□ **Քսանվեցերորդ տարում** (Թագավորաց Գ 15:33-16: 8)

“33Յուդայի երկրի արքայ Ասայի թագաւորութեան երրորդ տարում ամբողջ Իսրայէլի վրայ թագաւորեց Աքիայի որդի Բաասան: Նա քսանչորս տարի թագաւորեց Թերսայում:»

“8Յուդայի երկրի արքայ Ասայի թագաւորութեան քսանվեցերորդ տարում Թերսայում Իսրայէլի վրայ երկու տարի թագաւորեց Բաասայի որդի Ելան:»

□ **Դեռ ողջ էր երեսունվեցերորդ տարում**.(Մնացորդաց Բ 16:1)

“1Ասայի թագաւորութեան երեսունութերորդ տարում Իսրայէլի Բաաս արքան յարձակուեց Յուդայի երկրի վրայ: Նա ամրացրեց Հռաման, որ փակի Յուդայի երկրի արքայ Ասայի ելումուտը:»

14. Քանի՞ վերակացու կարգեց Սողոմոնը տաճարի կառուցման աշխատանքների համար:

 **Երեք հազար վեց հարյուր** (Մնացորդաց Բ 2:2)

“2Նա հաւաքեց եօթանասուն հազար բեռնակիրներ, լեռներում աշխատող ութսուն հազար քարհատներ եւ նրանց վրայ վերակացուներ՝ երեք հազար վեց հարիւր մարդ:»

 **Երեք հազար երեք հարյուր** (Թագավորաց Գ 5:16)

«16բացի երեք հազար հինգ հարիւր գործակալ ղեկավարներից, որ Սողոմոնը նշանակել էր գործաւորների վրայ:

15. Քանի՞ բաղնիք կար Սողոմոնի կառուցած հաստատությունում:

 **Երկու հազար** (Թագավորաց Գ 7: 26)

“26Աւազանի պղնձի հաստութիւնը մի թիզ էր. դրա շուրթը բաժակի շուրթի նման էր. դրա վրայ ծաղկած շուշան էր քանդակուած: Աւազանը մօտաւորապէս երկու հազար մար էր տանում:»

 **Ավելի քան երեք հազար** (Մնացորդաց Բ 4:5)

«5Մեծ աւազանի խորութիւնը մէկ թիզ էր, նրա շուրթը բաժակի շրթի նման էր, վրան շուշան ծաղիկներ էին քանդակուած, եւ երեք հազար չափ տարողութիւն ունէր: Նա այս ամէնն աւարտեց:»

16. Բաբելոնյան գերությունից ազատված Իսրայելցիներից քանի՞սն էին Նեփթաղիմ Մովաբացու որդիները:

 **Երկու հազար ութ հարյուր տասներկու** (Եզրաս Բ 2:6)

«6Նեփթաղիմ Մովաբացու որդիները, որոնք Յեսուի եւ Ռովաբի որդիներից էին, երկու հազար ութ հարիւր տասներկու.»

- **Երկու հազար ութ հարյուր տասնութ** (Նէեմի 7:11)

«11Փաաթմովաբի որդիները՝ Յեսուի եւ Յովաբի որդիներից՝ երկու հազար երկու հարիւր տասնութ.»

17. Քանի՞ զավակ ուներ Զաթուն:

- **Ինը հարյուր քառասունհինգ** (Եզրաս Բ 2:8)

«8Զատռնայի որդիները՝ ինը հարիւր քառասունհինգ»

- **Ութ հարյուր քառասուն հինգ.** (Նէեմի 7:13)

«13Զաթուի ոդիները՝ ութ հարիւր քառասունհինգ.»

18. Քանի՞ զավակ ուներ Ազիան:

- **Հազար երկու հարյուր քսաներկու** (Եզրաս Բ 2:12)

«12Արգիայի որդիները՝ երեք հազար երեք հարիւր քսաներկու»

- **Երկու հազար երեք հարյուր քսաներկու** (Նէեմիա 7:17)

«17Ազիայի որդիները՝ երկու հազար երեք հարիւր քսաներկու»

19. Քանի՞ զավակ ուներ Ադդին:

- Չորս հարյուր հիսունչորս (Եզրաս Բ 2:15)

«15Ադդինայի որդիները՝ չորս հարիւր յիսունչորս.»

- Վեց հարյուր հիսունհինգ (Նէեմիա 7:20)

«20Ադինի որդիները՝ վեց հարիւր յիսունչորս.»

20. Քանի՞ զավակ ուներ Ասումը:

- Երկու հարյուր քսաներեք (Եզրաս Բ 2:19)

«19Ասումի որդիները՝ երկու հարիւր քսաներեք.»

- Երեք հարյուր քսանութ (Նէեմիա 7:22)

«22Բէսաի որդիները՝ երեք հարիւր քսանչորս»

21. Քանի՞ զավակ ունեյին Բեթելը և Յեգեյը:

- **Երկու հարյուր քսաներեք** (Եզրաս Բ 2:28)

«28Բեթէլի եւ Յեգէի որդիները՝ չորս հարիւր քսաներեք.»

 **Հարյուր քսաներեք** (Նէեմիա 7:31)

«31Բեթէլի եւ Արիի որդիները՝ հարիւր քսաներեք.»

22. Եզրասը 2:64 և Նէեմիան 7:66 համամիտ են, որ ընդհանուր թիվը 42,360 էր: Սակայն, թվերը որևէ բանին սերտ չեն: Յուրաքանչյուր գրքի քանակը հետևյալն է.

 **29,818** (Եզրաս Բ)

 **31,089** (Նէեմիա)

23. Քանի՞ երգիչ էր ուղեկցում վեհաժողովը:

 Երկու հարյուր (Եզրաս 2:65 )

«65Չհաշուած ծառաներին, աղախիններին եւ նրանց երեխաներին, որոնց թիւը եօթը հազար երեք հարիւր երեսունեօթն էր, չհաշուած նաեւ սամոսերգու տղամարդկանց եւ կանանց, որոնք երկու հարիւր հոգի էին:»

 **Երկու հարյուր քառասունհինգ**. (Նէեմիա 7:66)

«66բացի իրենց ծառաներից ու աղախիններից, որոնք եօթը հազար երեք հարիւր երեսունեօթը մարդ էին, իսկ երգիչներն ու սաղմոսասացները՝ տղամարդիկ ու կանայք, երկու հարիւր քառասունհինգ մարդ:»

24. Ի՞նչ էր արքա Աբիասի մոր անունը:

 **Միքայա, Գիբիյացի Ուրիելի դուստրը**. (Մնացորդաց Բ 13:2)

«2Նա Երուսաղէմում թագաւորեց երեք տարի: Նրա մայրը Աբեսաղոմի դուստրն էր, անունը՝ Մաաքա: Պատերազմ էր տեղի ունենում Աբիասի ու Յերոբովամի միջեւ:»

 **Մաքա, Աբասողոմի դուստր** (Մնացորդաց Բ 11:20 ). **Սակայն, Աբասոլոմը ուներ միայն մեկ դուստր, որի անունն էր Թամար** (Թագավորաց Բ 14:27)

«20Դրանից յետոյ նա ամուսնացաւ Աքեսադոմի դուստր Մաաքայի հետ, եւ սա նրա համար ծնեց Աբիասին, Եթթիին, Իզային, Սալեմոթին:»

«27Աքեսադոմը երեք տղայ եւ մէկ աղջիկ ունեցաւ, որի անունն էր Թամար: Նա տեսքով շատ գեղեցիկ կին էր եւ, դառնալով Սողոմոնի որդի Ռոբովամի կինը, նրա համար ծնեց Աբիային:»

25. Արդյո՞ք Հիսուն և Իսրայելցիները գրավեցին Երուսաղեմը:

- **Այո** (Յեսու 10:23,40)

«23Այդպէս էլ արեցին. հինգ թագաւորներին՝ Երուսաղէմի թագաւորին, Քեբրոնի թագաւորին, Յերիմութի թագաւորին, Լաքիսի թագաւորին եւ Օդողոմի թագաւորին քարայրից հանեցին ու տարան նրա մօտ:»

«40Յեսուն հարուածեց ամբողջ լեռնային երկրին, Նագեբին եւ դաշտային երկրներին, Ասեդոթին եւ նրա բոլոր թագաւորներին: Նրանցից ոչ մէկին ողջ չթողեց, բոլոր բնակիչներին սպանեց, ինչպէս Իսրայէլի Տէր Աստուածն էր պատուիրել:»

- **Ոչ** (Յեսու 15: 63)

«63Յեբուսացիները բնակւում էին Երուսաղէմում, եւ Յուդայի որդիները չկարողացան մարտնչել նրանց դէմ, ուստի յեբուսացիները մինչեւ այսօր Երուսաղէմում բնակւում են Յուդայի որդիների հետ:»

26. Ո՞վ էր Մարիամի ամուսնու, Հովսեփի հայրը:

- **Հակոբ** (Մատթեոս 1:16)

«16Մատթանը ծնեց Յակոբին. Յակոբը ծնեց Յովսէփին՝ Մարիամի մարդուն, որի նշանածն էր կոյս Մարիամը, որից ծնուեց Յիսուս, որ անուանուեց Քրիստոս:»

 **Եղիին** (Ղուկաս 3:23)

«23եւ սա՝ Մատթէի, եւ սա՝ Ամոսի, եւ սա՝ Նաւումի, եւ սա՝ Էսղիի, եւ սա՝ Նանգէի,»

27. Դավիթի որդիներից ո՞րի ժառանգն է հանդիսանում Հիսուսը:

 **Սողոմոնի** (Մատթեոս 1:6)

«6Յեսսէն ծնեց Դաւիթ արքային: Դաւիթը ծնեց Սողոմոնին՝ Ուրիայի կնոջից»

 **Նաթանի** (Ղուկաս 3:29)

«29եւ սա՝ Մելլէի, եւ սա՝ Մեննէի, եւ սա՝ Մատտաթայի, եւ սա՝ Նաթանի, եւ սա՝ Դաւթի»

28. Ո՞վ էր Սաղաթելի հայրը:

 **Յեքոնիան** (Մատթեոս 1:12)

«12Բաբելոնում գերութիւնից յետոյ Յեքոնիան ծնեց Սաղաթիէլին»

 **Ղևին** (Ղուկաս 3:27)

«27եւ սա՝ Յեսուի, եւ սա՝ Եղիազարի, եւ սա՝ Յորամի, եւ սա՝ Մատթէի, եւ սա՝ Ղեւիի,»

29. Զերուբաբելի ո՞ր որդին էր հանդիսանում Հիսուս Քրիստոսի նախնին:

 **Աբիուդը** (Մատթեոս 1:13)

«13Սաղաթիէլը ծնեց Զորոբաբէլին. Զորոբաբէլը ծնեց Աբիուդին. Աբիուդը ծնեց Եղիակիմին.»

 **Ռեզան** (Ղուկաս 3:27) **Սակայն, Զարուբաբելի յոթ որդիների անուններն են. Մեշուլամ, Հանանիա, Հաշուբա, Օհել, Բերեքիա, Հասադիա, Յուշաբհեսեդ** (Մնացորդաց Ա 3:19, 20), **Աբիուդ և Ռեզա անունները ամենևին չեն համապատասխանում:**

«27եւ սա՝ Յեսուի, եւ սա՝ Եղիազարի, եւ սա՝ Յորամի, եւ սա՝ Մատթէի, եւ սա՝ Ղեւիի.»

«19Սաղաթիէլի որդիները՝ Զօրաբաբէլ եւ Սեմէի: Զօրաբաբէլի որդիները՝ Մասողամոս, Անանիաս եւ նրանց քոյր Սաղոմէ: 20Նաեւ՝ Ասեբա, Օող, Բարաքիաս, Ասադիաս եւ Ասոբասէդ՝ ընդամէնը ութ հոգի:»

30. Ո՞վ էր Օզիայի հայրը:

- **Յորամը** (Մատթեոս 1:8)

«8Րոբովամը ծնեց Աբիային. Աբիան ծնեց Ասափին. Ասափը ծնեց Յոսափատին. Յոսափատը ծնեց Յորամին. Յորամը ծնեց Օզիային»

- **Ամասիասը** (Մնացորդաց Բ 26:1)

«1Եւ երկրի ամբողջ ժողովուրդը առաւ տասնվեցամեայ Օզիասին եւ թագաւոր դարձրեց նրան իր հայր Ամասիասի փոխարէն:»

31. Ո՞վ էր Յեքոնիայի հայրը:

- **Յոսիան** (Մատթեոս 1:11)

«11Ամոսը ծնեց Յոսիային. Յոսիան ծնեց Յեքոնիային եւ նրա եղբայրներին՝ Բաբելոնում գերութեան ժամանակ:»

- **Յովակիմը** (Մնացորդաց Ա 3:16)

«16Յովակիմի որդիները. Յեքոնիաս եւ Սեդեկիաս:»

32. Քանի՞ սերունդ էին այնտեղ, Բաբելոնի գերությունից մինչեւ Քրիստոսի:

- **Մատթեոսն ասում է տասնչորս** (Մատթեոս 1:17)

«17Արդ, Աբրահամից մինչեւ Դաւիթը բոլոր սերունդները՝ տասնչորս սերունդ. եւ Դաւթից մինչեւ Բաբելոնի մէջ գերութիւնը՝ տասնչորս սերունդ. Բաբելոնի մէջ գերութիւնից մինչեւ Քրիստոս՝ տասնչորս սերունդ:»

-  **Սակայն, սերունդների մանրակրկիտ հաշվարկի դեպքում երևան է գալիս միայն տասներեքը** (տես. Մատթեոս 1:12-16)

«12Բաբելոնում գերութիւնից յետոյ Յեքոնիան ծնեց Սաղաթիէլին. 13Սաղաթիէլը ծնեց Զորոբաբէլին. Զորոբաբէլը ծնեց Աբիուդին. Աբիուդը ծնեց Եղիակիմին.14Եղիակիմը ծնեց Ազորին. Ազորը ծնեց Սադոկին. Սադոկը ծնեց Աքինին. Աքինը ծնեց Եղիուդին. 15Եղիուդը ծնեց Եղիազարին. Եղիազարը ծնեց Մատթանին.16Մատթանը ծնեց Յակոբին. Յակոբը ծնեց Յովսէփին՝ Մարիամի մարդուն, որի նշանածն էր կոյս Մարիամը, որից ծնուեց Յիսուս, որ անուանուեց Քրիստոս:»

33. Ո՞վ էր Շելայի հայրը:

-  **Կայնանը** (Ղուկաս 3:35-36)

«35եւ սա՝ Մաթուսաղայի, եւ սա՝ Ենոքի, եւ սա՝ Յարեդի, եւ սա՝ Մաղաղայէլի, եւ սա՝ Կայնանի,36եւ սա՝ Ենոսի, եւ սա՝ Սէթի, եւ սա՝ Ադամի, եւ սա՝ Աստծու»

-  **Արփաքսադը** (Ծննդոց 11:12)

«12Արփաքսադը հարիւր երեսունհինգ տարեկան հասակում ծնեց Կայնանին:»

34. Արդյո՞ք Հովհաննես Մկրտիչը Եղիան էր, ով պետք է գար:

-  **Այո** (Մատթեոս 11:14, 17:10-13)

«14Եւ եթէ ուզում էք ընդունել, Յովհաննէ՛սն է Եղիան, որ գալու է»

«10Աշակերտները նրան հարցրին եւ ասացին. «Հապա ինչո՞ւ օրէնսգէտներն ասում են, թէ նախ Եղիան պիտի գայ»: 11Յիսուս պատասխանեց եւ ասաց նրանց. «Եղիան կը գայ եւ կը վերահաստատի ամէն ինչ 12բայց ձեզ ասում եմ, որ Եղիան արդէն իսկ եկել է. բայց նրան չճանաչեցին, այլ, ինչ որ կամեցան, արեցին նրան. նոյնպէս եւ մարդու Որդին նրանց

ձեռքով չարչարուելու է»: 13Այն ժամանակ աշակերտները հասկացան, թէ Յովհաննէս Մկրտչի մասին էր ասել իրենց:»

 **Ոչ** (Հովհաննես 1:19-21)

«19Եւ Յովհաննէսի վկայութիւնը այս է. երբ հրեաները Երուսաղէմից քահանաներ ու ղեւտացիներ ուղարկեցին նրա մօտ, որպէսզի հարցնեն նրան՝ դու ո՞վ ես, 20նա խոստովանեց առանց վարանելու. խոստովանեց, թէ՝ ես Քրիստոսը չեմ: 21Ու նրան հարցրին՝ իսկ դու ո՞վ ես, Եղիա՞ն ես: Եւ նա ասաց՝ ո՛չ, չեմ: Իսկ դու մարգարէ՞ն ես: Նա պատասխանեց՝ ո՛չ:»

35. Արդյո՞ք Հիսուսը ժառագելու էր Դավթի գահը:

 **Այո. Այսպես էր ասել հրեշտակը** (Ղուկաս 1:32)

«32Նա մեծ կը լինի եւ Բարձրեալի որդի կը կոչուի: Եւ Տէր Աստուած նրան կը տայ նրա հօր՝ Դաւթի աթոռը, եւ նա յաւիտեան կը թագաւորի Յակոբի տան վրայ»

 **Ոչ, քանզի նա Յովակիմի ժառանգորդն էր** (տես Մատթեոս 1:11, Մնացորդաց Ա 3:16 ): **Աստված անիծել էր Յովակիմին, որ նրա ոչ մի ժառանգ չի նստի Դավթի գահին**: (Յերեմիա 36:30)

«11Ամոսը ծնեց Յոսիային. Յոսիան ծնեց Յեքոնիային եւ նրա եղբայրներին՝ Բաբելոնում գերութեան ժամանակ»

«16Յովակիմի որդիները. Յեքոնիաս եւ Սեդեկիաս:»

«30Իսկ Յուդայի երկրի Յովակիմ արքային էլ կ՚ասես, թէ այսպէս է ասում Տէրը. «Դու վառեցիր մատեանն այն եւ ասացիր՝ ՚Ինչո՞ւ նրա մէջ գրեցիր ու յայտնեցիր, թէ բաբելացիների արքան պիտի ներխուժի ու ջնջի այս երկիրը, պիտի զրկի այն մարդ ու անասունից՚»:

36. Քանի՞ կենդանի հեծած,Հիսուսը գնաց Երուսաղեմ:

 **Մեկ քուռակ** (Մարկոս 11:7, Ղուկաս 19:35) “Եվ նրանք բերեցին մտրուկը Հիսուսին, գցեցին իրենց հագուստները դրա վրա և նա հեծեց այն:»

«7Աւանակը բերեցին Յիսուսի մօտ. եւ դրա վրայ զգեստներ գցեցին, եւ Յիսուս նստեց դրա վրայ:»

«35Եւ այն բերին Յիսուսի մօտ. զգեստներ գցեցին նրա վրայ եւ Յիսուսին նստեցրին»

 Երկու քուռակ և ավանակ (Մատթեոս 21:7) «Նրանք բերեցին ավանակը և քուռակը և գցեցին իրենց հագուստները դրանց վրա և նա հեծնեց:»

«7եւ էշն ու քուռակը բերեցին, նրանց վրայ զգեստներ գցեցին. եւ նա նստեց դրանց վրայ:»

37. Ինչպե՞ս Սիմոն Պողոսը պարզեց, որ Հիսուսը Քրիստոսն էր:

 **Երկնային հայտնությամբ** (Մատթեոս 16:16)

«16Յիսուս պատասխանեց եւ նրան ասաց. «Երանի՜ է քեզ, Սիմո՛ն, Յովնանի՛ որդի, որովհետեւ մարմինը եւ արիւնը չէ, որ յայտնեց քեզ, այլ՝ իմ Հայրը, որ երկնքում է:»

 **Իր եղբայր Անդրեասը ասաց նրան**. (Հովհաննես 1:41)

«41Սա նախ գտնում է իր եղբայր Սիմոնին ու նրան ասում է. «Գտանք Մեսիային» (որ թարգմանւում է՝ Քրիստոս):»

38. Որտե՞ղ Հիսուսը առաջին անգամ հանդիպեց Սիմոն Պողոսին և Անդրեասին:

 **Գալիլեայի ծովեզերքի մոտ** (Մատթեոս 4:18-22)

«18Մինչ Յիսուս Գալիլիայի ծովեզերքով քայլում էր, տեսաւ երկու եղբայրների՝ Սիմոնին, որ Պետրոս էր կոչւում, եւ նրա եղբայր Անդրէասին. ծովի մէջ ուռկան էին գցում, քանի որ ձկնորսներ էին: 19Եւ նրանց ասաց. «Իմ յետեւի՛ց եկէք, եւ ես

ձեզ մարդկանց որսորդներ պիտի դարձնեմ»:20Եւ նրանք իսկոյն թողնելով ուռկանները՝ գնացին նրա յետեւից:21Եւ այնտեղից առաջ գնալով, տեսաւ երկու այլ եղբայրների՝ Զեբեդէոսի որդի Յակոբոսին եւ նրա եղբայր Յովհաննէսին, մինչ նաւակի մէջ էին իրենց հօր՝ Զեբեդէոսի հետ միասին եւ իրենց ուռկանները կարգի էին բերում. եւ նրանց էլ կանչեց:

 **Հորդանան գետի ափին** (Հովհաննես 1:42), **Այնուհետ Հիսուսը որոշեց գնալ Գալիլեա** (Հովհաննես 1:43)

«42Սա նրան տարաւ Յիսուսի մօտ: Նայելով նրան՝ Յիսուս ասաց. «Դու Յովնանի որդի Սիմոնն ես. դու պիտի կոչուես Կեփաս» (որ թարգմանւում է՝ Պետրոս):»

«43Յաջորդ օրը Յիսուս որոշեց Գալիլիա մեկնել. գտաւ Փիլիպպոսին ու նրան ասաց. «Արի՛ իմ յետեւից»:»

39. Երբ Հիսուսը հանդիպեց Յայրոսին, արդյո՞ք նրա դուստրը արդեն մահացել էր:

 **Այո**, Մատթեոս 9:18 մեջբերում է նրան ասելով.”Իմ դուստրը հենց հիմա մահացավ:»

«18Մինչ Յիսուս նրանց այս բաներն էր ասում, ահա մի իշխանաւոր, մօտենալով, երկրպագեց նրան ու ասաց. «Իմ դուստրը հէնց նոր մեռաւ, սակայն գայիր եւ քո ձեռքը նրա վրայ դնէիր, եւ նա կը կենդանանար»:

 **Ոչ,** Մարկոս 5:23 մեջբերում է նրան ասելով. “Իմ փոքրիկ դուստրը մահվան շեմին է:»

«23սաստիկ աղաչում էր նրան ու ասում, որ իր դուստրը մահամերձ է, եւ որ նա գայ ու նրա վրայ իր ձեռքը դնի, որպէսզի առողջանայ եւ ապրի:»

40. Արդյո՞ք Հիսուսը թույլատրում էր իր աշակերտներին իրենց ճանապարհորդության ընթացքում իրեր պահել:

- **Այո** (Մարկոս 6:8)

«8Նա իր մօտ կանչեց Տասներկուսին եւ սկսեց ուղարկել նրանց երկու-երկու ու պիղծ ոգիների վրայ նրանց իշխանութիւն տուեց:»

- **Ոչ.** (Մատթեոս 10:9, Ղուկաս 9:3)

“9Մի՛ ունեցէք ո՛չ ոսկի, ո՛չ արծաթ եւ ո՛չ էլ պղինձ դրամ՝ ձեր գօտիների մէջ.»

«3Եւ ասաց նրանց. «Ճանապարհի համար ոչինչ մի՛ վերցրէք. ո՛չ գաւազան եւ ո՛չ մախաղ, ո՛չ հաց եւ ո՛չ արծաթ դրամ. երկու հագուստ մի՛ ունեցէք.»

41. Արդյո՞ք Հերովդեսը կարծում էր, որ Հիսուսը Հովհաննես Մկրտիչն էր:

- **Այո**. (Մատթեոս 14:2, Մարկոս 6:16)

“2«Նա՛ է Յովհաննէս Մկրտիչը. մեռելներից յարութիւն է առել, եւ դրա համար նրա միջոցով զօրաւոր գործեր են լինում»:

«16Ուրիշներ ասում էին, թէ՝ Եղիան է. իսկ միւսները, թէ՝ մարգարէ է կամ թէ՝ մարգարէների նման մէկը:»

- **Ոչ** (Ղուկաս 9:9)

«9Հերովդէսն ասաց. «Յովհաննէսին ես գլխատեցի, իսկ սա ո՞վ է, որի մասին այսպիսի բաներ եմ լսում»: Եւ ուզում էր նրան տեսնել:»

42. Արդյո՞ք Հովհաննես Մկրտիչը ճանաչեց Հիսուսին մկրտությունից առաջ:

- **Այո** (Մատթեոս 3:13-14)

«13Այն ժամանակ Յիսուս Գալիլիայից Յորդանան եկաւ, Յովհաննէսի մօտ՝ նրանից մկրտուելու: 14Իսկ Յովհաննէսն ընդդիմացաւ նրան ու ասաց. «Ի՛նձ պէտք է, որ քեզնից մկրտուեմ, եւ դու ի՞նձ մօտ ես գալիս»:

□ **Ոչ** (Հովհաննես 1:32.33)

«32Յովհաննէսը վկայեց եւ ասաց. «Տեսայ Հոգին, որ իջնում էր երկնքից որպէս աղաւնի եւ հանգչում նրա վրայ:»

“33Եւ ես չէի ճանաչում նրան. սակայն նա, ով ինձ ուղարկեց ջրով մկրտելու, նա ինձ ասաց. «Ում վրայ տեսնես, որ Հոգին իջնում եւ մնում է, նա՛ է, որ մկրտում է Սուրբ Հոգով»:

43. Արդյո՞ք Հովհաննես Մկրտիչը ճանաչեց Հիսուսին մկրտությունից հետո:

□ **Այո** (Հովհաննես 1:32,33)

«32Յովհաննէսը վկայեց եւ ասաց. «Տեսայ Հոգին, որ իջնում էր երկնքից որպէս աղաւնի եւ հանգչում նրա վրայ» «33Եւ ես չէի ճանաչում նրան. սակայն նա, ով ինձ ուղարկեց ջրով մկրտելու, նա ինձ ասաց. «Ում վրայ տեսնես, որ Հոգին իջնում եւ մնում է, նա՛ է, որ մկրտում է Սուրբ Հոգով»:

□ **Ոչ** (Մատթեոս 11:2)

“2Իսկ Յովհաննէսը, երբ բանտում լսեց Քրիստոսի գործերի մասին, ուղարկեց իր աշակերտներին եւ նրանց միջոցով ասաց նրան.»

44. Ըստ Հովհաննեսի Ավետարանի, ի՞նչ էր ասել Հիսուսը իր իսկ վկայության մասին:

□ **«Եթե ես վկայեմ իմ մասին, իմ վկայությունը ճշմարիտ չէ:»** (Հովհաննես 5:31)

31«Եթէ ես եմ վկայում իմ մասին, իմ վկայութիւնը հաւաստի չէ:»

□ **«Նույնիսկ, եթե ես վկայեմ իմ մասին, իմ վկայությունը ճշմարիտ է:»** (Հովհաննես 8:14)

«14Յիսուս պատասխանեց եւ ասաց նրանց. «Թէպէտ ես վկայում եմ իմ անձի մասին, իմ վկայութիւնը ճշմարիտ է,

որովհետեւ գիտեմ, թէ որտեղից եկայ եւ ուր եմ գնում: Բայց դուք չգիտէք՝ որտեղից եմ գալիս կամ ուր եմ գնում:»

45. Երբ Հիսուսը մտավ Երուսաղեմ, արդյո՞ք նա մաքրեց տաճարը նույն օրը:

 Այո. (Մատթեոս 21:12)

“12Եւ Յիսուս մտաւ տաճար ու դուրս հանեց բոլոր նրանց, որ տաճարի մէջ վաճառում ու գնումներ էին անում. նա շուռ տուեց լումայափոխների սեղաններն ու աղաւնեվաճառների աթոռները:»

 **Ոչ, Նա մտավ տաճար, դիտեց շուրջբոլորը, սակայն, ոչինչ չարեց, քանի որ շատ ուշ էր: Փոխարենը, նա գնաց Բեթանիա գիշերելու և հաջորդ առավոտ վերադառնալու, տաճարը մաքրելու համար**: (Մարկոս 11:1-17)

1Երբ մօտեցան Երուսաղէմին, Բեթփագէին եւ Բեթանիային, Ձիթենեաց լերան մօտ, նա ուղարկեց աշակերտներից երկուսին եւ նրանց ասաց. 2«Դուք գնացէ՛ք այդ գիւղը, որ ձեր դիմացն է. եւ հէնց որ այնտեղ մտնէք, կը գտնէք մի կապուած աւանակ, որի վրայ ոչ մի մարդ արարած չի նստել. արձակեցէ՛ք այն եւ բերէ՛ք: 3Եւ եթէ մէկը ձեզ ասի. «Այդ աւանակը ինչո՞ւ էք արձակում», կ՚ասէք. «Տիրոջը պէտք է». եւ նա իսկոյն դրան այստեղ կ՚ուղարկի»: 4Գնացին եւ գտան աւանակը՝ կապուած դռան մօտ, դրսում, փողոցի մէջ, եւ այն արձակեցին: 5Եւ այնտեղ կանգնածներից ոմանք ասացին նրանց. «Ի՞նչ էք անում, ինչո՞ւ էք այդ աւանակն արձակում»: 6Եւ նրանք նրանց ասացին, ինչպէս Յիսուս ասել էր. ու նրանց թոյլ տուին: 7Աւանակը բերեցին Յիսուսի մօտ. եւ դրա վրայ զգեստներ գցեցին, եւ Յիսուս նստեց դրա վրայ: 8Եւ շատեր իրենց զգեստները փռում էին ճանապարհին. եւ ուրիշներ

ծառերից ճիւղեր էին կտրում ու գցում ճանապարհի վրայ:9Եւ նրանք, որ առաջից ու յետեւից էին գնում, աղաղակում էին եւ ասում. «Ովսաննա՜ Բարձրեալին, օրհնեա՜լ լինի նա, որ գալիս է Տիրոջ անունով. 10օրհնեա՜լ լինի մեր հօր՝ Դաւթի թագաւորութիւնը, որ գալիս է: Խաղաղութի՜ւն՝ երկնքում եւ փա՜ռք՝ բարձունքներում»: «11Եւ Յիսուս մտաւ Երուսաղէմ, գնաց տաճար ու նայեց իր շուրջը, ամէն ինչի վրայ. եւ որովհետեւ երեկոյի ժամ էր, բարձրացաւ Բեթանիա՝ Տասներկուսի հետ միասին: 12Յաջորդ օրը, մինչ Բեթանիայից դուրս էին գալիս, Յիսուս քաղցած էր:13Եւ հեռուից մի տերեւալից թզենի տեսնելով՝ եկաւ, որ թերեւս նրա վրայ մի բան գտնի. եւ երբ նրան մօտեցաւ, ոչինչ չգտաւ, այլ միայն՝ տերեւ, որովհետեւ տակաւին թզի ժամանակը չէր: 14Յիսուս խօսքը թզենուն ուղղեց եւ ասաց. «Էլ քեզնից ոչ ոք պտուղ չուտի յաւիտեան»: Եւ նրա աշակերտները լսում էին:» "15Եկան Երուսաղէմ. եւ Յիսուս տաճար մտնելով՝ սկսեց դուրս հանել տաճարում գտնուող վաճառողներին ու գնորդներին եւ լումայափոխների սեղանները ցրեց ու աղաւնեվաճառների աթոռները շուռ տուեց.16եւ չէր թողնում, որ որեւէ մէկը տաճարի միջով նոյնիսկ որեւէ բան անցկացնի: 17Եւ ուսուցանում էր նրանց ու ասում. «Գրուած է՝ իմ տունը բոլոր ազգերի համար աղօթքի տուն է կոչուելու, իսկ դուք այն դարձրել էք աւազակների որջեր»:

46. Ավետարաններն ասում են, որ Հիսուսը անիծեց թզենին, արդյո՞ք ծառը անմիջապես չորացավ:

- **Այո** (Մատթեոս 21:19)

19Եւ ճանապարհի վրայ մի թզենի տեսնելով՝ եկաւ դէպի այն եւ նրա վրայ ոչինչ չգտաւ, այլ միայն՝ տերեւ: Եւ թզենուն

ասաց. «Այսուհետեւ քեզնից յաւիտեան պտուղ թող չլինի»: Եւ նոյն պահին թզենին չորացաւ»

 **Ոչ.** Այն չորացավ զիերվա ընթացքում: (Մարկոս 11:20)
“20Յաջորդ օրը, առաւօտեան, մինչ նոյն ճանապարհից էին անցնում, թզենին արմատից չորացած տեսան:»

47. Արդյո՞ք Հուդան համբուրեց Հիսուսին:

 **Այո.**(Մատթեոս 26:48-50)
“48Եւ նա, որ նրան մատնելու էր, նրանց նշան էր տուել ու ասել. «Ում հետ ես համբուրուեմ, նա՛ է, նրան կը բռնէք»:49Եւ սա իսկոյն մօտենալով Յիսուսին՝ ասաց. «Ողջո՜յն, Վարդապե՛տ». ու նրա հետ համբուրուեց: 50Իսկ Յիսուս նրան ասաց. «Ընկե՛ր, սրա՞ համար դու եկար»: Այն ժամանակ, մօտենալով, ձեռք բարձրացրին Յիսուսի վրայ ու նրան բռնեցին:»

 **Ոչ. Հուդան չէր կարող բավարար մոտենալ Հիսուսին, նրան համբուրելու**: Հովհաննես (18:3-12)
«3Եւ Յուդան իր հետ վերցնելով գունդը եւ պահակներ՝ ուղարկուած քահանայապետներից ու փարիսեցիներից, այնտեղ եկաւ ջահերով, լապտերներով ու զէնքերով: 4Իսկ Յիսուս իր վրայ եկող այս ամէնը տեսնելով՝ դուրս ելաւ ու նրանց ասաց. «Ո՞ւմ էք փնտռում»: 5Նրան պատասխանեցին՝ Յիսուս Նազովրեցուն: Յիսուս նրանց ասաց՝ ես եմ: Նրանց հետ էր եւ Յուդան, որ մատնում էր նրան: 6Երբ Յիսուս ասաց՝ ես եմ, յետ-յետ գնացին եւ գետին ընկան:7Դարձեալ նրանց հարցրեց՝ ո՞ւմ էք փնտռում: Նրանք ասացին՝ Յիսուս Նազովրեցուն:8Յիսուս նրանց պատասխանեց. «Ձեզ ասացի, թէ՝ ես եմ. արդ, եթէ ինձ էք փնտռում, նրանց թո՛յլ տուէք գնալ».9որպէսզի կատարուի խօսքը, որ ասել էր, թէ՝ նրանց,

որոնց ինձ տուեցիր, նրանցից եւ ոչ մէկին չկորցրի:10Իսկ Սիմոն Պետրոսը, որովհետեւ սուր ունէր, քաշեց այն եւ զարկեց քահանայապետի ծառային ու նրա աջ ականջը կտրեց: Եւ այն ծառայի անունը Մաղքոս էր11Յիսուս Պետրոսին ասաց. «Այդ սուրդ նորից իր պատեանի մէջ դիր. այն բաժակը, որ Հայրն է ինձ տուել, չպիտի՞ խմեմ»: 12Իսկ զունդը, հազարապետը եւ հրեաների պահակները բռնեցին Յիսուսին եւ կապեցին:»

48. Ի՞նչ է ասել Հիսուսը, Պետրոսի ուրացման մասին:

 **«Աքաղաղը չի կանչի, մինչ դու ինձ չուրանաս երեք անգամ:»** (Հովհաննես 13:38)

“38Յիսուս պատասխանեց. «Ինձ համար կեա՞նքդ կը տաս. Ճշմարիտ, ճշմարիտ եմ ասում քեզ, աքաղաղը դեռ կանչած չի լինի, երբ դու երեք անգամ ինձ ուրացած կը լինես»:

 «**Մինչ աքաղաղը կկանչի երկու անգամ, դու ինձ կուրանաս երեք անգամ**:» (Մարկոս 14:30) **Երբ աքաղաղը կանչեց մեկ անգամ, երեք ուրացումները դեռ չէին ավարտվել:** (Տես Մարկոս 14:72) Ուստի, կանխատեսումը ձախողվեց:

“30Եւ Յիսուս նրան ասաց. «Ճշմարիտ եմ ասում քեզ, որ դու այս գիշեր իսկ, դեռ աքաղաղը չկանչած, երեք անգամ պիտի ուրանաս ինձ»:

“72Եւ հէնց նոյն ժամին աքաղաղը երկրորդ անգամ կանչեց: Եւ Պետրոսը յիշեց այն խօսքը, որ Յիսուս ասել էր իրեն, թէ՝ «Աքաղաղը դեռ երկու անգամ չկանչած՝ դու երեք անգամ ինձ պիտի ուրանաս». եւ սկսեց լալ:»

49. Արդյո՞ք Հիսուսը կրեց իր իսկ խաչը:

 **Այո**. (Հովհաննես 19:17-18)

“17Այն ժամանակ Յիսուսին յանձնեց նրանց ձեռքը, որպէսզի խաչը հանուի: 18Եւ նրանք առան Յիսուսին եւ տարան: Եւ խաչափայտը նա ինքն էր վերցրել եւ բարձրացնում էր այն տեղը, որի անունն էր Գագաթ, իսկ եբրայերէն կոչւում էր Գողգոթա,»

 **Ոչ.** (Մատթեոս 27:31-32)

«31Եւ երբ նրան ծաղրուծանակի ենթարկեցին, նրա վրայից հանեցին քղամիդը ու նրան հագցրին իր զգեստը. եւ տարան նրան խաչը հանելու:32Եւ դուրս ելնելով՝ գտան կիւրենացի մի մարդ՝ Սիմոն անունով, ու նրան ստիպեցին, որ նա խաչը կրի:»

50. Արդյո՞ք Հիսուսը մահացավ, մինչ տաճարի վարագույրի պատռվելը:

 **Այո,** (Մատթեոս 27:50-51; Մարկոս 15:37-38)

«50Եւ Յիսուս դարձեալ բարձր ձայնով աղաղակեց եւ հոգին աւանդեց:

51Եւ ահա տաճարի վարագոյրը վերեւից մինչեւ ներքեւ երկուսի պատռուեց, եւ երկիրը շարժուեց, եւ ժայռեր ճեղքուեցին,»

«37Եւ Յիսուս բարձր ձայն արձակեց ու հոգին աւանդեց: 38Եւ տաճարի վարագոյրը վերեւից մինչեւ ներքեւ երկուսի պատռուեց»

 **Ոչ. Վարագույրը պատռվելուց հետո, Հիսուսը բղավեց բարձրաձայն ասելով. “Հայր, քո ձեռքն եմ հանձնում իմ հոգին» Եվ ասելով այս, նա հոգին ավանդեց**: (Ղուկաս 23:45-46)

«45Եւ տաճարի վարագոյրը մէջտեղից պատռուեց: 46Եւ Յիսուս բարձրաձայն աղաղակեց եւ ասաց. «Հա՛յր, քո ձեռքն եմ աւանդում իմ հոգին»: Երբ այս ասաց, հոգին աւանդեց:»

51. Արդյո՞ք որևէ գաղտնի բան ասաց Հիսուսը:

 **Ոչ. "Ես ոչ մի գաղտնի բան չեմ ասել:»** (Հովհաննես 18:20)

«20Յիսուս նրան պատասխանեց. «Ես բացայայտ ասացի բոլորին. ես միշտ ուսուցանել եմ ժողովարանում եւ տաճարի մէջ, ուր հաւաքւում էին բոլոր հրեաները. եւ ծածուկ ոչինչ չեմ խօսել:»

 **Այո.** «Նա խոսեց նրանց հետ առակով, սակայն առանձին, բացատրեց իր իսկ աշակերտներին ամեն ինչ:» (Մարկոս 4:34 ) Աշակերտները հարցրեցին.» Ինչու՜ ես դու խոսում նրանց հետ առակներով:» Նա ասաց. "Ձեզ տրված է իմանալ երկնային թագավորության գաղտնիքները, սակայն նրանց այդ տրված չէ:» (Մատթեոս 13:10-11)

«34Եւ առանց առակի նրանց հետ ոչինչ չէր խօսում, բայց իր աշակերտների համար առանձին ամէն ինչ մեկնում էր:»

«10Եւ աշակերտները մօտենալով՝ նրան ասացին. «Ինչո՞ւ ես առակներով խօսում նրանց հետ»: 11Նա պատասխանեց եւ ասաց նրանց. «Քանի որ ձե՛զ է տրուած իմանալ երկնքի արքայութեան խորհուրդները, իսկ նրանց տրուած չէ.»

52.Ո՞րտեղ էր Հիսուսը խաչման վեցերորդ օրը:

 **Խաչի վրա** (Մարկոս 15:23)

«23Զմուռսով խառնուած գինի տուին նրան, բայց նա չվերցրեց:»

 **Պիղատոսի դատարանում** (Հովհաննես 19:14)

«14Իսկ երբ Պիղատոսը այս խօսքերը լսեց, Յիսուսին դուրս բերեց, նստեց բեմի վրայ, այն տեղը, որ Քարայատակ էր կոչւում, իսկ եբրայերէն՝ Կապպաթա:»

53. Ավետարանները ասում են, որ երկու ավազակ խաչվեցին Հիսուսի հետ: Արդյո՞ք երկու ավազակներն էլ ծաղրեցին Հիսուսին:

 **Այո**. (Մարկոս 15:32)

«32Այդ Քրիստոսը՝ Իսրայէլի այդ թագաւորը, թող այժմ իջնի խաչից, որպէսզի տեսնենք եւ հաւատանք դրան»: Եւ նրա հետ խաչուածներն էլ նախատում էին նրան:»

 **Ոչ. Նրանցից մեկը ծաղրեց Հիսուսին, իսկ մյուսը պաշտպանեց**: (Ղուկաս 23:43)

«43Եւ Յիսուս նրան ասաց. «Ճշմարիտ եմ ասում քեզ, այսօր ինձ հետ դրախտում կը լինես»:

54. Արդյո՞ք Հիսուսը համբարձվեց Դրախտ, խաչելության նույն օրը:

 **Այո. Նա ասաց ավազակին, ով պաշտպան կանգնեց նրան, “Այսոր դու կլինես Դրախտում ինձ հետ**:» (Ղուկաս 23:43)

«43Եւ Յիսուս նրան ասաց. «Ճշմարիտ եմ ասում քեզ, այսօր ինձ հետ դրախտում կը լինես»:

 **Ոչ. Երկու օր անց, նա ասաց Մարիամ Մագդաղենացուն,”Ես դեռ չեմ համբարձվել Հոր մոտ**:» (Հովհաննես 20:17)

«17Յիսուս նրան ասաց. «Ինձ մի՛ մօտեցիր, քանի որ դեռ Հօրս մօտ չեմ բարձրացել. ուրեմն գնա՛ դու իմ եղբայրների մօտ ու նրանց ասա՛, որ ես բարձրանում եմ դէպի իմ Հայրը եւ ձեր Հայրը, դէպի իմ Աստուածը եւ ձեր Աստուածը»

55. Երբ Պողոսը Դամասկոս մեկնող ճանապարհին էր, նա տեսավ լույս և ձայն լսեց: Արդյո՞ք նրանք, ովքեր նրա հետ էին լսեցին ձայնը:

 **Այո.** (Գործք 9:7)

“7Սօղոսը գետնից վեր կացաւ, սակայն բաց աչքերով իսկ ոչ ոքի չէր տեսնում: Նրա ձեռքից բռնած մտցրին Դամասկոս:»

 **Ոչ** (Գործք 22:9)

«9Ինձ հետ եղողները եւս լոյսը տեսնում էին, բայց չէին լսում այն ձայնը, որ ինձ հետ խօսում էր:»

56. Երբ Պողոսը տեսավ լույսը, նա ընկավ գետնին: Արդյո՞ք նրա ճանապարհի ուղեկցորդները նույնպես ընկան գետնին:

 **Այո** (Գործք 26:14)

“14Եւ երբ մենք բոլորս գետին ընկանք, լսեցի մի ձայն, որ ինձ ասում էր եբրայերէն լեզուով. «Սաւո՛ւղ, Սաւո՛ւղ, ինչո՞ւ ես ինձ հալածում. քեզ համար խիստ դժուար է խթանի դէմ աքացել»:

 **Ոչ** (Գործք 9:7)

«7Սօղոսը գետնից վեր կացաւ, սակայն բաց աչքերով իսկ ոչ ոքի չէր տեսնում: Նրա ձեռքից բռնած մտցրին Դամասկոս:»

57. Արդյո՞ք ձայը ասաց, Պողոսի պարտավորությունների մասին:

 **Այո**. (Գործք 26: 16-18)

«16վե՛ր կաց ու կանգնի՛ր ոտքերիդ վրայ. ես քեզ երեւացի նրա համար, որ քեզ նշանակեմ պաշտօնեայ եւ վկայ այն բոլորի համար, որոնց մէջ ինձ տեսար եւ այն բաների համար, որոնցով պիտի երեւամ քեզ.»«17ես քեզ կը փրկեմ ժողովրդից եւ հեթանոսներից, որոնց մէջ քեզ կ՚ուղարկեմ,» «18որպէսզի բանաս նրանց աչքերը, նրանց դարձնես խաւարից դէպի լոյս

եւ սատանայի իշխանութիւնից՝ դէպի Աստուած, որպէսզի նրանք մեղքերի թողութիւն ստանան եւ սրբերի հետ ժառանգութեան բաժին՝ իմ հանդէպ ունեցած հաւատով»:

 **Ոչ Ձայնը հրահանգեց Պողոսին գնալ Դամասկոս և որտեղ նրան կասվի, թե ինչ պետք է անել.** (Գործք 9:7; 22:10)

«7Սօղոսը գետնից վեր կացաւ, սակայն բաց աչքերով իսկ ոչ ոքի չէր տեսնում: Նրա ձեռքից բռնած մտցրին Դամասկոս:»

«10Եւ ես ասացի. «Ի՞նչ պէտք է անեմ, Տէ՛ր»: Եւ Տէրն ինձ ասաց. «Վե՛ր կաց եւ գնա՛ Դամասկոս, եւ այնտեղ քեզ կը պատմուի այն բոլորի մասին, որ հրամայուած է քեզ անել»:

58. Երբ իսրայելցիները բնակություն հաստատեցին Սատտիմում, նրանք շնացան Մոաբի դուստրերի հետ: Աստված պատժեց նրանց ժանտախտով: Որքա՞ն մարդ զոհվեց այդ ժանտախտից:

 **Քսանչորս հազար** (Թվեր 25:1 և 9)

«1Իսրայէլացիները բանակատեղի դրեցին Սատտիմում եւ պղծուեցին այնտեղ մովաբացիների դուստրերի հետ պոռնկանալով:»

«9Այդ կոտորածից քսանչորս հազար մարդ մեռաւ:»

 **Քսաներեք հազար** (Կորնթացիներ Ա 10:8)

«8Եւ չպոռնկանանք, ինչպէս նրանցից ոմանք պոռնկացան, եւ մի օրում ընկան քսանչորս հազարը:»

59. Հակոբի տան քանի՞ անդամներ եկան Եգիպտոս:

 **Յոթանասուն շունչ** (Ծննդոց 46:27)

«27Յովսէփը Եգիպտոսում ունեցաւ երկու որդի: Այսպիսով Յակոբի ընտանիքի՝ Եգիպտոս մտած բոլոր տղամարդկանց թիւը եօթանասունն է:»

**Նշում** “Հունական Աստվածաշնչում այն յոթանասունն է, սակայն հայերեն Աստվածաշնչում թարգմանված է յոթանասուն հինգ, Այնպես որ անհրաժեշտ է ճշտել:»

□ **Յոթանասունհինգ շունչ** (Գործք 7:14)

«14Յովսէփը մարդ ուղարկեց եւ բերել տուեց Յակոբին՝ իր հօրը եւ ամբողջ ազգատոհմին՝ եօթանասունհինգ հոգի:»

60.Ի՞նչ արեց Հուդան արյան գումարով, որը նա ստացավ Հիսուսին մատնելու համար:

□ **Նա ագարակ գնեց** (Գործք 1:18)

«18Սա իր անիրաւութեան վարձով մի ագարակ գնեց եւ ուռչելով մէջտեղից պատռուեց, ու նրա ամբողջ փորը դուրս թափուեց:»

□ **Նա ամբողջ գումարը նետեց տաճար և հեռացավ: Վանականները չէին կարող տաճարի գանձարանում դնել արյան գումարը, ուստի նրանք գնեցին ագարակ, օտարականներին հուղարկավորելու համար**: (Մատթեոս 27: 5)

«5Եւ արծաթ դրամները նետեց տաճարի մէջ եւ հեռացաւ ու գնաց ինքն իրեն կախեց:»

61. Ինչպե՞ս մահացավ Հուդան:

□ Գումարը նետելուց հետո, նա հեռացավ և ինքն իրեն կախեց: (Մատթեոս 27:5)

«5Եւ արծաթ դրամները նետեց տաճարի մէջ եւ հեռացաւ ու գնաց ինքն իրեն կախեց:»

□ **Ագարակը չար արարքի գումարով գնելուց հետո, նա ուռչեց մեջտեղից և նրա ամբողջ փորոտիքը դուրս թափվեց**: (Գործք 1:18)

«18Սա իր անիրաւութեան վարձով մի ագարակ գնեց եւ ուռչելով մէջտեղից պատռուեց, ու նրա ամբողջ փորը դուրս թափուեց:»

62. Ինչու՞ ագարակը անվանեցին “Արյան Ագարակ »

 «**Որովհետև վանականները գնեցին այն, արյան գումարով** »: (Մատթեոս 27:8)

«8Այդ պատճառով այդ ագարակը կոչուել է Արեան ագարակ՝ մինչեւ այսօր:»

 Այնտեղ, Հուդայի արյունալի մահվան պատճառով: (Գործք 1:19)

«19Եւ այս բանը յայտնի եղաւ բոլոր նրանց, որոնք Երուսաղէմում են բնակւում, այնպէս որ մինչեւ իսկ այն ագարակը կոչուեց իրենց բարբառով Ակեղդամա, այսինքն՝ Արեան ագարակ.»

63. Ո՞վ է փրկանք և ու՞մ համար:

 “**Մարդու որդին եկավ.. տալու իր կյանքը որպես փրկանք շատերին**:» (Մարկոս 10:45) «**Հիսուս Քրիստոսը տվեց իրեն փրկանք բոլորին**...» (Տիմոթեոս Ա 2:5-6)

«45որովհետեւ մարդու Որդին էլ չեկաւ ծառայութիւն ընդունելու, այլ՝ ծառայելու եւ տալու իր անձը որպէս փրկանք շատերի փոխարէն»:

«5քանզի մէ՛կ Աստուած կայ եւ մէ՛կ միջնորդ՝ Աստծու եւ մարդկանց միջեւ. Յիսուս Քրիստոս՝ մարդը,6որ տուեց ինքն իրեն որպէս փրկանք բոլորի համար՝ ի վկայութիւն իր ժամանակների.»

64. Արդյո՞ք Մովսեսի օրենքը օգտակար էր:

 **Այո. “Ամբողջ գիրը շահեկան է..»** (Տիմոտեոս Բ 3:16)

«16Աստծու շնչով գրուած ամէն գիրք օգտակար է ուսուցման, յանդիմանութեան, ուղղելու եւ արդարութեան մէջ խրատելու համար,»

 **Ոչ «… Նախկին պատվիրանը մի կողմ է դրվել իր թույլ և անօգուտ լինելու պատճառով…»** (Եբրայեցիներ 7:18)

«18Առաջին պատուիրանը արհամարհուեց իր տկարութեան եւ անօգտակարութեան պատճառով,»

## 65. Ո՞րն է խաչի վրայի ճիշտ ձևակերպումը:

 «**Սա Հիսուսն է, Հրեաների Թագավորը** » (Մատթեոս 27:37)

«37Եւ նրա գլխի վերեւը դրեցին նրա յանցապարտութեան գիրը, թէ՝ սա՛ է Յիսուսը՝ հրեաների թագաւորը:»

 **«Հրեաների Թագավոր»** (Մարկոս 15:26)

«26Եւ կար նրա դատապարտութեան մասին գրութիւն՝ գրուած այսպէս. «Հրեաների թագաւորն է:»

 **«Սա է Թագավորը Հրեաների»** (Ղուկաս 23:38)

«38Եւ նրա խաչի վրայ մի գրութիւն կար՝ գրուած յունարէն, լատիներէն եւ եբրայերէն գրերով, թէ՝ սա՛ է հրեաների արքան:»

 «Հիսուսը Նազովրեցի, թագավորը Հրեաների » (Հովհաննես 19:20)

«20Պիղատոսը մի տախտակ էլ գրեց եւ դրեց խաչի վրայ. եւ գրուած էր. «Յիսուս Նազովրեցի՝ հրեաների թագաւոր»:

## 66. Արդյո՞ք Հերովդեսը ցանկացավ սպանել Հովհաննես Մկրտիչին:

 **Այո** (Մատթեոս 14:5)

«5Եւ կամենում էր նրան սպանել, բայց վախենում էր ժողովրդից, քանի որ նրան որպէս մարգարէ էին ընդունում:»

 **Ոչ, Այդ Հերովդիան էր, Հերովդեսի կինը, ով ցանկանում էր սպանել նրան: Սակայն Հերովդեսը գիտեր, որ նա առաքինի մարդ էր և չվնասեց նրան** (Մարկոս 6:20)

«20Եւ Հերովդիան ոխ էր պահել նրա դէմ ու ուզում էր նրան սպանել տալ, բայց չէր կարողանում,»

67. Ո՞վ էր Հիսուսի տասներորդ աշակերտը, տասներկուսի ցուցակում:

 Թադեոսը (Մատթեոս 10:1-4 ; Մարկոս 3:13-19 )

«1Եւ նա իր մօտ կանչելով իր տասներկու աշակերտներին՝ նրանց իշխանութիւն տուեց պիղծ դեւերի վրայ՝ հանելու դրանք եւ բժշկելու ամէն ցաւ եւ ամէն հիւանդութիւն: 2Եւ տասներկու առաքեալների անունները սրանք էին. առաջին՝ Սիմոն Պետրոս կոչուածը, եւ նրա եղբայրը Անդրէաս, 3Զեբեդէոսի որդի Յակոբոս եւ նրա եղբայրը Յովհաննէս, Փիլիպպոս եւ Բարթողոմէոս, Թովմաս եւ Մատթէոս մաքսաւոր, Ալփէոսի որդի Յակոբոս եւ Ղեբէոս, որ Թադէոս կոչուեց, 4Սիմոն Կանանացի եւ Յուդա Իսկարիովտացի, որ եւ մատնեց նրան:»

«13Յիսուս լեռը բարձրացաւ եւ իր մօտ կանչեց նրանց, որոնց ինքը կամեցաւ. եւ նրանք գնացին նրա մօտ: 14Նա նշանակեց Տասներկուսին, որ իր շուրջը լինեն, եւ նրանց քարոզելու ուղարկի, 15ու նրանք իշխանութիւն ունենան ցաւեր բուժելու եւ դեւեր հանելու: 16Եւ Սիմոնի անունը Պետրոս դրեց,«17եւ Զեբեդէոսի որդու՝ Յակոբոսի ու նրա եղբօր՝ Յովհաննէսի անունները դրեց Բանէրեգէս, որ նշանակում է՝ Որոտման որդիներ:18Նաեւ՝ Անդրէասին եւ Փիլիպպոսին եւ Բարթողոմէոսին եւ մաքսաւոր Մատթէոսին եւ Թովմասին եւ Ալփէոսի որդի Յակոբոսին եւ Թադէոսին եւ Սիմոն



Կանանացուն 19եւ Յուդա Իսկարիովտացուն, որը եւ նրան մատնեց:»

- **Հուդան Հակոբի որդին, այս Ղուկասի Ավետարանում զտնվող անունն է.** (Ղուկաս 6:12-16)

«12Եւ այդ օրերին Յիսուս լեռ բարձրացաւ աղօթելու եւ ամբողջ գիշերն անցկացրեց Աստծուն աղօթելով: 13Եւ երբ լոյսը բացուեց, կանչեց իր աշակերտներին եւ ընտրեց նրանցից տասներկուսին, որոնց եւ առաքեալներ անուանեց.14Սիմոնին, որին էլ Պետրոս կոչեց, եւ Անդրէասին՝ նրա եղբօրը, Յակոբոսին, Յովհաննէսին, 15Փիլիպպոսին, Բարթողոմէոսին, Մատթէոսին, Թովմասին, Ալփէոսի որդի Յակոբոսին, Սիմոնին՝ Նախանձայոյզ կոչուածին,16Յակոբի որդի Յուդային եւ Իսկարիովտացի Յուդային, որը եւ մատնիչ եղաւ:»

68. Հիսուսը տեսավ մի մարդու մաքսատանը և կոչեց նրան լինելու իր աշակերտը: Ի՞նչ էր նրա անունը:

- **Մատթեոս** (Մատթեոս 9:9)

«9Եւ Յիսուս այնտեղով անցնելով՝ տեսաւ Մատթէոս անունով մի մարդու, որ նստել էր մաքսատանը, ու նրան ասաց. «Իմ յետեւի՛ց արի»: Եւ նա վեր կենալով՝ գնաց նրա յետեւից:»

- **Ղեվի** (Մարկոս 2:14; Ղուկաս 5:27)

«14Եւ մինչ նա անցնում էր, տեսաւ Ալփէոսի որդի Ղեւիին, որ մաքսատանը նստած գործի վրայ էր, ու նրան ասաց՝ արի՛ իմ յետեւից: Եւ Ղեւին վեր կացաւ գնաց նրա յետեւից:»

«27Դրանից յետոյ, դուրս ելաւ այնտեղից եւ տեսաւ մի մաքսաւորի, որի անունը Ղեւի էր, եւ որը մաքսատանը նստած՝ գործի վրայ էր: Յիսուս նրան ասաց. «Իմ յետեւից արի՛»:

69. Արդյո՞ք Հիսուսը խաչվեց Զատիկի ընթրիքից առաջ, թե հետո:

 Հետո (Մարկոս 14:12-17)

«12Եւ Բաղարջակերաց տօնի առաջին օրը, երբ զատկի զառն էին մորթում, աշակերտները նրան ասացին. «Ո՞ւր ես ուզում գնանք պատրաստենք, որ զատկական ընթրիքն ուտես»: 13Եւ նա աշակերտներից երկուսին ուղարկեց ու նրանց ասաց. «Գնացէ՛ք այն քաղաքը եւ երբ այն քաղաքը մտնէք, կը պատահի ձեզ մի մարդ, որ ուսին ջրի սափոր ունի. գնացէ՛ք նրա յետեւից:14Եւ նա ո՛ր տունը որ մտնի, տանտիրոջը կ՚ասէք. «Վարդապետն ասում է՝ ո՞ւր է այն իջեւանը, ուր իմ աշակերտների հետ զատկական ընթրիքը պիտի ուտեմ»:«15Եւ նա ձեզ ցոյց կը տայ զարդարուած մի վերնատուն. այնտե՛ղ պատարաստեցէք մեզ համար»:16Եւ նրա աշակերտները գնացին պատրաստելու. եկան այն քաղաքը եւ գտան՝ ինչպէս որ նա իրենց ասել էր. ու զատկական ընթրիքը պատրաստեցին: 17Երբ երեկոյ եղաւ, նա եկաւ Տասներկուսի հետ միասին:»

 **Առաջ.** Հուդան դուրս եկավ գիշերը (Հովհաննես 13:30) Մյուս աշակերտները կարծեցին, որ նա դուրս է գալիս գնելու պարեն Զատիկի ընթրիքը պատրաստելու համար (Հովհաննես 13:20): Երբ Հիսուսին ձերբակալեցին, հրեաները չմտան Պիղատոսի դատի դահլիճը, որովհետև նրանք ուզում էին անպիղծ մնալ Զատիկի ընթրիքի համար:(Հովհաննես 18:28) Երբ հայտարարվեց Հիսուսին դեմ դատավճիռը, Զատկի Պատրաստման օրվա ժամը վեցն էր: (Հովհաննես 19:14)

«30Իսկ նա պատառը վերցնելով՝ իսկոյն դուրս ելաւ: Եւ գիշեր էր...»

«20Ճշմարիտ, ճշմարիտ եմ ասում ձեզ, ով որ ընդունի նրան, ում ես կ՚ուղարկեմ, ինձ է ընդունում, եւ ով ինձ է ընդունում, ընդունում է նրան, ով ինձ ուղարկեց»:

«28Կայիափայի տնից Յիսուսին տարան կուսակալի ապարանքը: Այգաբաց էր: Բայց նրանք ապարանք չմտան, որպէսզի չպղծուեն եւ որպէսզի զատկական ընթրիքը կարողանան ուտել:»

«14Իսկ երբ Պիղատոսը այս խօսքերը լսեց, Յիսուսին դուրս բերեց, նստեց բեմի վրայ, այն տեղը, որ Քարայատակ էր կոչւում, իսկ եբրայերէն՝ Կապպաթա:»

70. Արդյո՞ք Հիսուսը աղոթեց Հորը, խաչելությունը կանխելու համար:

 Այո (Մատթեոս 26:39, Մարկոս 14:36, Ղուկաս 22:42)

«39Եւ մի փոքր առաջ գնալով՝ ընկաւ իր երեսի վրայ, աղօթեց ու ասաց. «Հա՛յր իմ, եթէ կարելի է, այս բաժակը թող ինձնից հեռու անցնի, բայց ոչ՝ ինչպէս ես եմ կամենում, այլ՝ ինչպէս դու»:

«36Եւ ասում էր. «Աբբա՛, Հա՛յր, ամէն ինչ քեզ կարելի է. այս բաժակը ինձնից հեռացրո՛ւ, բայց ոչ թէ ինչպէս ե՛ս եմ կամենում, այլ՝ ինչպէս դո՛ւ ես կամենում»:

«42«Հա՛յր, եթէ կամենում ես, այս բաժակը ինձնից հեռացրո՛ւ, բայց ոչ թէ իմ կամքը, այլ քո՛նը թող լինի»:

 **Ոչ**. (Հովհաննես 12:27)

«27Բայց այժմ հոգիս խռովուած է. եւ ի՞նչ ասեմ. Հա՛յր, փրկի՛ր ինձ այս ժամից: Բայց ես հէնց այս բանի համար եմ եկել այս ժամին:»

71.Ավետարաններում, որտեղ ասվում է, որ Հիսուսը աղոթեց խուսափելու խաչվելուց, քանի՞ անգամ, «նա հեռացավ իր աշակերտներից աղոթելու:»

□ **Երեք** (Մատթեոս 26:36-46 և Մարկոս 14:32-42)

«[36]Այն ժամանակ Յիսուս նրանց հետ եկաւ մի տեղ, որի անունը Գեթսեմանի էր, եւ նրանց ասաց. «Նստեցէ՛ք այդտեղ, մինչեւ որ գնամ աղօթեմ»: [37]Եւ իր հետ վերցնելով Պետրոսին եւ Զեբեդէոսի երկու որդիներին՝ սկսեց տրտմել եւ տագնապել:[38]Այն ժամանակ նրանց ասաց. «Հոգիս տխուր է մահու չափ. այստե՛ղ մնացէք եւ ինձ հետ հսկեցէ՛ք»:[39]Եւ մի փոքր առաջ գնալով՝ ընկաւ իր երեսի վրայ, աղօթեց ու ասաց. «Հա՛յր իմ, եթէ կարելի է, այս բաժակը թող ինձնից հեռու անցնի, բայց ոչ՝ ինչպէս ես եմ կամենում, այլ՝ ինչպէս դու»: [40]Նա եկաւ աշակերտների մօտ եւ նրանց քնի մէջ գտաւ ու Պետրոսին ասաց. «Այդպէ՛ս, չկարողացա՞ք մէկ ժամ արթուն մնալ ինձ հետ:

«[32]Եկան այն տեղը, որը Գեթսեմանի էր կոչւում: Եւ նա աշակերտներին ասաց. «Նստեցէ՛ք այստեղ, մինչեւ ես աղօթեմ»:[33]Եւ նա իր հետ վերցրեց Պետրոսին, Յակոբոսին եւ Յովհաննէսին եւ սկսեց տխրել ու տագնապել:[34]Այն ժամանակ նրանց ասաց. «Տխուր է հոգիս մեռնելու աստիճան. մնացէ՛ք այստեղ եւ արթո՛ւն կացէք»:[35]Եւ փոքր-ինչ առաջ գնալով՝ երեսի վրայ ընկաւ գետին. եւ աղօթում էր, որ, եթէ կարելի է, այդ ժամը իրենից հեռանայ:[36]Եւ ասում էր. «Աբբա՛, Հա՛յր, ամէն ինչ քեզ կարելի է. այս բաժակը ինձնից հեռացրո՛ւ, բայց ոչ թէ ինչպէս ե՛ս եմ կամենում, այլ՝ ինչպէս դո՛ւ ես կամենում»:

[49]Ես միշտ ձեզ մօտ էի եւ ուսուցանում էի տաճարում. եւ ինձ չբռնեցիք. բայց այս եղաւ, որպէսզի մարգարէների Գրուածքները կատարուեն»:
[50]Այն ժամանակ աշակերտները բոլորն էլ լքեցին նրան եւ փախան:
[51]Եւ մի երիտասարդ գնում էր նրա յետեւից՝ իր մերկ մարմնի վրայ մի սաւան զգած: Երիտասարդները նրան բռնեցին, [52]եւ նա թողնելով հագի կտորը՝ մերկ փախաւ նրանցից: [53]Եւ Յիսուսին տարան Կայիափա քահանայապետի մօտ. եւ նրա հետ հաւաքուած էին բոլոր քահանայապետները, օրէնսգէտներն ու ծերերը:
[37]Եւ Յիսուս եկաւ ու նրանց քնած գտաւ. եւ Պետրոսին ասաց. «Սիմո՛ն, ննջո՞ւմ ես. չկարողացա՞ր մէկ ժամ արթուն մնալ: [38]Արթո՛ւն կացէք եւ աղօթեցէ՛ք, որպէսզի փորձութեան մէջ չընկնէք: Հոգին յօժար է, բայց մարմինը՝ տկար»: [39]Եւ նորից գնաց, աղօթքի կանգնեց ու նոյն բաներն ասաց: [40]Կրկին անգամ դարձաւ այնտեղ եւ նրանց քնի մէջ գտաւ. որովհետեւ նրանց աչքերը ծանրացել էին, եւ չէին իմանում, թէ ինչ պատասխան տան նրան: [41]Երրորդ անգամ եկաւ եւ նրանց ասաց. «Քնեցէ՛ք այսուհետեւ եւ հանգստացէ՛ք, քանի որ վախճանը հասել. եկաւ ժամը, եւ ահա մարդու Որդին մատնւում է մեղաւորների ձեռքը: [42]Ո՛ն, վե՛ր կացէք գնանք, որովհետեւ ահա մօտեցաւ նա, ով ինձ մատնելու է»:
[51]Եւ ահա Յիսուսի հետ գտնուողներից մէկը ձեռքը երկարեց եւ իր սուրը հանեց ու հարուածեց քահանայապետի ծառային եւ նրա ականջը կտրեց պոկեց: [52]Այն ժամանակ Յիսուս նրան ասաց. «Քո սուրը ետ դիր իր տեղը, որովհետեւ, ովքեր սուր են վերցնում, սրով կ՚ընկնեն: [53]Եւ կամ կարծո՞ւմ ես, թէ չեմ կարող

իմ Հօրն աղաչել, որ նա հիմա ինձ համար այստեղ հասցնի հրեշտակների աւելի քան տասներկու գնդեր: [54]Էլ ինչպէ՞ս պիտի կատարուէին Սուրբ Գրքերում գրուածները, թէ՝ այսպէս պէտք է լինի»:[55]Այն ժամանակ Յիսուս ամբոխին ասաց. «Սրերով եւ մահակներով իմ դէմ էք ելել՝ բռնելու ինձ իբրեւ մի աւազակի՞: Միշտ ձեզ մօտ, տաճարում նստում էի եւ ուսուցանում, ու ինձ չբռնեցիք.

«[41]Արթո՛ւն մնացէք եւ աղօ՛թք արէք, որպէսզի փորձութեան մէջ չընկնէք. հոգին յօժար է, բայց մարմինն՝ տկար»:[42]Դարձեալ, երկրորդ անգամ, Յիսուս գնաց աղօթքի կանգնեց ու ասաց. «Հա՛յր իմ, եթէ կարելի չէ, որ այս բաժակը ինձնից հեռու անցնի, ապա այն կը խմեմ. քո կա՛մքը թող լինի»:[43]Եւ գալով՝ դարձեալ նրանց քնի մէջ գտաւ, որովհետեւ նրանց աչքերը ծանրացել էին:[44]Թողեց նրանց ու երրորդ անգամ գնաց աղօթքի կանգնեց. եւ դարձեալ նոյն խօսքն ասաց:[45]Այն ժամանակ եկաւ աշակերտների մօտ ու նրանց ասաց. «Ննջեցէ՛ք այսուհետեւ ու հանգստացէ՛ք, քանի որ ահա ժամը հասել է, եւ մարդու Որդին մեղաւորների ձեռքն է մատնւում,

«46Վե՛ր կացէք գնանք այստեղից. որովհետեւ ահա հասաւ նա, ով ինձ մատնելու է»:»

 **Մեկ. Ոչինչ չի ասվում մյուս երկու անգամվա մասին**:(Ղուկաս 22:39-46)

«39Եւ Յիսուս ըստ իր սովորութեան ելաւ գնաց Ձիթենեաց լեռը. նրա յետեւից գնացին եւ աշակերտները: 40Երբ տեղ հասաւ, ասաց նրանց. «Աղօթքի՛ կանգնեցէք, որ փորձութեան մէջ չընկնէք»:41Եւ ինքը հեռացաւ նրանցից մօտ մի քարընկեց, ծնրադրեց, աղօթում էր եւ ասում.42«Հա՛յր, եթէ կամենում ես,

այս բաժակը ինձնից հեռացրո՛ւ, բայց ոչ թէ իմ կամքը, այլ քո՛նը թող լինի»: «43Եւ նրան երկնքից երեւաց մի հրեշտակ եւ ուժ էր տալիս նրան. նա տագնապի մէջ էր եւ ամբողջ հոգով էր աղօթում:44"Եւ նրանից քրտինքը հոսում էր արեան կաթիլների նման՝ շիթ-շիթ գետին թափուելով:45Եւ վեր կենալով աղօթքից՝ եկաւ աշակերտների մօտ, նրանց քնած գտաւ տրտմութիւնից46եւ նրանց ասաց. «Ինչո՞ւ էք քնել. վե՛ր կացէք, աղօթեցէ՛ք, որպէսզի փորձութեան մէջ չընկնէք»:

72. Մատթեոսը և Մարկոսը համամիտ են, որ Հիսուսը գնաց և աղոթեց երեք անգամ: Որո՞նք էին երկրորդ աղոթքի խոսքերը:

 **Մարկոսը չի ասում խոսքերը, սակայն նա ասում է, որ դրանք նույն են, ինչ առաջին աղոթքում**: (Մարկոս 14:39)

«39Եւ նորից գնաց, աղօթքի կանգնեց ու նոյն բաներն ասաց:»

 **Մատթեոսը ասում է մեզ խոսքերը և մենք կարող ենք տեսնել, որ դրանք նույնը չեն, ինչպես առաջին աղոթքում**: (Մատթեոս 26:42)

«42Դարձեալ, երկրորդ անգամ, Յիսուս գնաց աղօթքի կանգնեց ու ասաց. «Հա՛յր իմ, եթէ կարելի չէ, որ այս բաժակը ինձնից հեռու անցնի, ապա այն կը խմեմ. քո կա՛մքը թող լինի»:»

73. Ի՞նչ ասաց հարյուրապետը, երբ Հիսուսը մահացավ:

 «**Իրավմամբ այս մարդը անմեղ էր**:» (Ղուկաս 23:47)

«47Եւ հարիւրապետը, տեսնելով ինչ որ պատահեց, փառաւորեց Աստծուն եւ ասաց. «Իսկապէս այս մարդը արդար էր»:

 «**Իրավմամբ, այս մարդը Աստծո Որդին էր**:» (Մարկոս 15:39)



«39Եւ այնտեղ կանգնած հարիւրապետը տեսնելով, թէ ինչպէս նա աղաղակեց եւ հոգին աւանդեց, ասաց. «Իրօք այս մարդը Աստծու Որդի էր»:

74. Երբ Հիսուսը ասաց. "Իմ Տէր, իմ Տէր, ինչու՞ ես դու ինձ լքել» ի՞նչ լեզվով նա խոսեց:

□ **Եբրայերեն, խոսքերն են "Էլի՛, Էլի՛....»** (Մատթեոս 27:46)

«46Ժամը երեքի մօտ Յիսուս բարձր ձայնով գոչեց ու ասաց. «Էլի՛, Էլի՛, լա՞մա սաբաքթանի», այսինքն՝ Աստուա՛ծ իմ, Աստուա՛ծ իմ, ինչո՞ւ թողեցիր ինձ:

□ **Արամերեն. խոսքերն էին «Էլի՛, Էլի՛...»** (Մարկոս 15:34)

«34Եւ ժամը երեքին Յիսուս բարձրաձայն աղաղակեց եւ ասաց. «Էլի՛, Էլի՛, լա՞մա սաբաքթանի», որ թարգմանւում է՝ Աստուա՛ծ իմ, Աստուա՛ծ իմ, ինչո՞ւ թողեցիր ինձ:»

75. Ըստ Ավետարանների, ո՞րն էին Հիսուսի խոսքերը մահից առաջ:

□ "**Հայր, քո ձեռքն եմ ես հանձնում իմ հոգին**:» (Ղուկաս 23:46)

«46Եւ Յիսուս բարձրաձայն աղաղակեց եւ ասաց. «Հա՛յր, քո ձեռքն եմ աւանդում իմ հոգին»: Երբ այս ասաց, հոգին աւանդեց:»

□ "**Ավարտվեց** » (Հովհաննես 19:32)

«32«Ամէն ինչ կատարուած է»: Եւ գլուխը կախելով՝ հոգին աւանդեց:»

76.Երբ Հիսուսը մտավ Կափառնա, նա բժշկեց հարյուրապետի ստրուկին: Արդյո՞ք հարյուրապետը ինքն անձամբ եկավ խնդրելու Հիսուսին այդ մասին:

□ **Այո** (Մատթեոս 8:5)

«5Կափառնայում մտնելիս նրան մօտեցաւ մի հարիւրապետ. աղաչում էր նրան,»

 **Ոչ. Նա ուղարկեց մի քանի հրեա ավագների և իր ընկերներին** (Ղուկաս 7:3,6)

«3Երբ լսեց Յիսուսի մասին, հրեաներից աւագներին ուղարկեց, որ աղաչեն նրան, որպէսզի գայ եւ բժշկի իր ծառային:»

«6Յիսուս գնաց նրանց հետ. երբ տնից շատ հեռու չէր, հարիւրապետը նրա մօտ բարեկամներ ուղարկեց՝ ասելով. «Տէ՛ր, նեղութիւն մի՛ կրիր, որովհետեւ արժանի չեմ, որ իմ յարկի տակ մտնես.»

77.

 **Աղամին ասվեց, որ եթե և երբ նա ճաշակի արգելված պտուղը, նա կմահանա նույն օրը**: (Ծննդոց 2:17)

«17բայց բարու եւ չարի գիտութեան ծառից մի՛ կերէք, որովհետեւ այն օրը, երբ ուտէք դրանից, մահկանացու կը դառնաք»:

 **Աղամը ճաշակեց պտուղը և շարունակեց ապրել մինչ խոր ծերություն, 930 տարի:** (Ծննդոց 5:5)

«5Ադամը մեռաւ՝ ապրելով ինը հարիւր երեսուն տարի:»

78.

 Աստված որոշեց, որ մարդ արարածի կյանքի տևողությունը կլինի սահմանափակված մինչ 120 տարի. (Ծննդոց 6:3)

«3Տէր Աստուած ասաց. «Իմ ոգին յաւիտեան թող չմնայ այդ մարդկանց մէջ, որովհետեւ նրանք մարմնաւոր են: Նրանց կեանքի սահմանը թող լինի հարիւր քսան տարի»:»

 Այդ բանից հետո ծնված շատերը ապրեցին 120 տարուց ավել: Արփաքսադը ապրեց 438 տարի: Նրա որդի Սաղան ապրեց 433 տարի: Նրա որդի Եբերը ապրեց 464 տարի և այլն: (Ծննդոց 11:12-16)

«12Արփաքսադը հարիւր երեսունհինգ տարեկան հասակում ծնեց Կայնանին: 13Արփաքսադը Կայնանին ծնելուց յետոյ ապրեց եւս չորս հարիւր տարի, ծնեց ուստրեր ու դուստրեր եւ մեռաւ: Կայնանը հարիւր երեսուն տարեկան հասակում ծնեց Սաղային: Կայնանը Սաղային ծնելուց յետոյ ապրեց եւս երեք հարիւր երեսուն տարի, ծնեց ուստրեր ու դուստրեր եւ մեռաւ: 14Սաղան հարիւր երեսուն տարեկան հասակում ծնեց Եբերին:15Սաղան Եբերին ծնելուց յետոյ ապրեց եւս երեք հարիւր երեսուն տարի, ծնեց ուստրեր ու դուստրեր եւ մեռաւ: 16Եբերը հարիւր երեսունչորս տարեկան հասակում ծնեց Փաղէկին»

79. Արդյո՞ք Հիսուսից բացի որևէ այլ մեկը համբարձվեց երկինք:

 Ոչ (Հովհաննես 3:13)

«13Արդ, ոչ ոք երկինք չի ելել, եթէ ոչ նա, որ իջաւ երկնքից՝ մարդու Որդին, որ երկնքից էր:»

 **Այո. «Եվ Եղիան մրրիկի մեջ համբարձվեց** երկինք:» (Թագավորաց Դ 2:11)

«11Մինչ նրանք քայլում էին, մի հրեղէն կառք ու հրեղէն երիվարներ երեւացին, նրանց միմեանցից բաժանեցին, եւ Եղիան պտտահողմի մէջ դէպի երկինք վերացաւ:»

80. Ո՞վ էր քահանայապետը, երբ Դավիթը գնաց Աստծո տուն և ճաշակեց նվիրաբերված հացը:

 **Աբիաթարը** (Մարկոս 2:26)

«26թէ ինչպէս Աբիաթար քահանայապետի օրով մտաւ Աստծու տունը եւ կերաւ առաջաւորութեան հացը՝ տալով նաեւ նրանց, որ իր հետ էին. մի բան, որ, բացի քահանաներից, ուրիշների համար օրինաւոր չէր ուտել»

□ **Աքիմելեքը, Աբիաթարի հայրը** (Թագավորաց Ա 1:1; 22:20)

«1Արիմաթէմ Սիբայից՝ Եփրեմի լեռից եկած Եղկանա անունով Նասիբ Եփրեմցի մի մարդ կար: Նա Թոկիի որդի Հեղիի որդի Յերեմիէլի որդին էր:»

«20Աքիտոբի որդի Աքիմելէքի մի որդին փրկուեց: Նրա անունն էր Աբիաթար: Նա փախաւ Դաւթի մօտ:»

81. Արդյո՞ք, ըստ հրեական ավանդույթների, հուղարկավորումից առաջ Հիսուսի մարմինը պատված էր անուշաբույրերով:

□ **Այո և նրա աշակերտուհիները վկա եղան նրա հուղարկավորմանը:** (Հովհաննես 19:39-40 )

“39Եւ դարձեալ միւս գրուածն ասում է. «Պիտի նայեն նրան, ում խոցեցին»□ 40Այնուհետեւ Յովսէփը, որ արիմաթիացի էր եւ Յիսուսի թաքուն աշակերտն էր հրեաների վախի պատճառով, Պիղատոսին աղաչեց, որ Յիսուսի մարմինը վերցնի: Եւ Պիղատոսը հրաման տուեց. ուստի Յովսէփն ու Նիկոդեմոսը եկան եւ նրան վերցրին□»

□ **Ոչ. Հիսուսը փաթաթված էր սպիտակ սավանով: Այնուհետ կանայք բերեցին և պատրաստեցին անուշաբույրեր, “այնպես որ նրանք կարող էին գնալ և օծել նրան, Հիսուսին** » (Մարկոս 16:1)

“1Եւ երբ շաբաթն անցաւ, Մարիամ Մագդաղենացին, Յակոբոսի մայր Մարիամը եւ Սաղոմէն գնացին խնկի



պատրաստութիւն տեսան, որպէսզի գան եւ օծեն նրա մարմինը:»

### 82. Ե՞րբ էին կանայք գնել անուշաբույրը:

- **Շաբբաթից հետո** (Մարկոս 16:1)

«1Եւ երբ շաբաթն անցաւ, Մարիամ Մագդաղենացին, Յակոբոսի մայր Մարիամը եւ Սաղոմէն գնացին խնկի պատրաստութիւն տեսան, որպէսզի գան եւ օծեն նրա մարմինը:»

- Շաբբաթից առաջ. Կանայք “պատրաստել էին անուշաբույրերը և քսուկները:» Այնուհետ, «Շաբբաթ օրը, ըստ պատվիրանի,նրանք հանգստացան:» (Ղուկաս 23:55 մինչ 24:1)

“55Եւ Յովսէփի յետեւից գնում էին կանայք, որոնք Գալիլիայից էին եկել Յիսուսի հետ. նրանք տեսան գերեզմանը, եւ թէ ինչպէս նրա մարմինը այնտեղ դրուեց: 56Վերադարձան, խնկեր եւ իւղեր պատրաստեցին ու շաբաթ օրը, օրէնքի համաձայն, հանգիստ արեցին□» “1Բայց կիրակի օրը, առաւօտեան շատ վաղ, կանայք գերեզման եկան՝ բերելով իրենց պատրաստած խնկերը. նրանց հետ եւ ուրիշ կանայք□»

### 83. Օրվա ո՞ր ժամին կանայք այցելեցին գերեզմանը:

- **«Լուսաբացին մոտ»** (Մատթեոս 28:1)

«1Շաբաթ օրուայ երեկոյեան, երբ կիրակին լուսանում էր, Մարիամ Մագդաղենացին եւ միւս Մարիամը եկան գերեզմանը տեսնելու:»

- **«Երբ արևը ծագել էր »** (Մարկոս 16:2)

«2Եւ կիրակի օրը, առաւօտեան, արեւածագին եկան գերեզման:»

### 84.Ո՞րն էր կանանց գերեզման գնալու պատճառը:

 **Օծելու Հիսուսի մարմինը անուշաբույրերով** (Մարկոս 16:1; Ղուկաս 23:55 մինչև 24:1 )

“1Եւ երբ շաբաթն անցաւ, Մարիամ Մագդաղենացին, Յակոբոսի մայր Մարիամը եւ Սաղոմէն գնացին խնկի պատրաստութիւն տեսան, որպէսզի գան եւ օծեն նրա մարմինը»

«55Եւ Յովսէփի յետեւից գնում էին կանայք, որոնք Գալիլիայից էին եկել Յիսուսի հետ. նրանք տեսան գերեզմանը, եւ թէ ինչպէս նրա մարմինը այնտեղ դրուեց: 56Վերադարձան, խնկեր եւ իւղեր պատրաստեցին ու շաբաթ օրը, օրէնքի համաձայն, հանգիստ արեցին» «1Բայց կիրակի օրը, առաւօտեան շատ վաղ, կանայք գերեզման եկան՝ բերելով իրենց պատրաստած խնկերը. նրանց հետ եւ ուրիշ կանայք»

 **Տեսնելու գերեզմանը: Այստեղ ոչինչ չի ասվում անուշաբույրերի մասին:** (Մատթեոս 28:1 )

«1Բայց կիրակի օրը, առաւօտեան շատ վաղ, կանայք գերեզման եկան՝ բերելով իրենց պատրաստած խնկերը. նրանց հետ եւ ուրիշ կանայք»

 **Առանց որևէ պատճառի:Ըստ այս ավետարանի, անուշաբույրերով պատելը կատարվել է Շաբբաթից առաջ**: (Հովհաննես 20:1)

«1Եւ կիրակի օրը Մարիամ Մագդաղենացին առաւօտեան արշալոյսին գերեզման է գալիս եւ տեսնում է, որ քարը գերեզմանի դռնից վերցուած է:»

## 85. Գերեզմանի մուտքի մեծ քարը տեղաշարժվել էր: Որտե՞ղ էր քարը, երբ կանայք ժամանեցին:

 **Նրանք տեսան, որ քարը «Ետ էր գլորված»** (Մարկոս 16:4) **Նրանք գտան քարը “ետ գլորված գերեզմանից »** (Ղուկաս 24:2

) **Նրանք տեսան, որ «քարը վերցված էր գերեզմանից:»** (Հովհաննես 20:1)

«4Եւ նայեցին ու տեսան, որ գերեզմանից քարը գլորուած էր. եւ այն շատ մեծ էր:»

«2Եւ քարը գերեզմանից գլորած գտան:»

«1Եւ կիրակի օրը Մարիամ Մագդաղենացին առաւօտեան արշալոյսին գերեզման է գալիս եւ տեսնում է, որ քարը գերեզմանի դռնից վերցուած է:»

 **Երբ կանայք մոտեցան, հրեշտակ իջավ երկնքից, գլորեց քարը և զրուցեց կանանց հետ: Մատթեոսը կանանց վկա դրաձրեց քարի գլորվելուն**: (Մատթեոս 28:1-6)

«1Շաբաթ օրուայ երեկոյեան, երբ կիրակին լուսանում էր, Մարիամ Մագդաղենացին եւ միւս Մարիամը եկան գերեզմանը տեսնելու: 2Եւ ահա մեծ երկրաշարժ եղաւ, որովհետեւ Տիրոջ հրեշտակը երկնքից իջնելով՝ մօտեցաւ, դռնից վէմը մի կողմ գլորեց ու նստեց նրա վրայ: 3Նրա տեսքը փայլակի նման էր, ու նրա զգեստը՝ սպիտակ, ինչպէս ձիւնը: 4Նրա ահից պահապանները խռովուեցին եւ մեռելների պէս եղան:5Հրեշտակը խօսեց ու կանանց ասաց. «Դուք մի՛ վախեցէք, գիտեմ, որ փնտռում էք Յիսուսին, որ խաչուեց.6այստեղ չէ նա, քանի որ յարութիւն առաւ, ինչպէս ինքն ասել էր. եկէ՛ք, տեսէ՛ք այն տեղը, ուր պառկած էր»

86. Արդյո՞ք որևէ մեկը ասաց կանանց, թե ինչ է պատահել Հիսուսի մարմնի հետ:

 **Այո** «Մի երիտասարդ սպիտակ զգեստով» (Մարկոս 16:5 ): «Երկու տղամարդ...փայլփլող հագուստով » որոնք հետագայում նկարագրվել են որպես հրեշտակներ (Ղուկաս 24:4 և 24:23) Հրեշտակ, մեկը, ով գլորեց ետ քարը (Մատթեոս

16:2 ) Յուրաքանչյուր պարագայում, կանանց ասվել է, որ Հիսուսը համբարձվել է մեռյալներից (Մատթեոս 28:7; Մարկոս 16:6; Ղուկաս 24:5, ծանոթագրություն )
«5Եւ ներս, գերեզման մտնելով՝ տեսան մի երիտասարդի, որ նստած էր աջ կողմը՝ սպիտակ պատմուճան հագած. եւ զարհուրեցին»
«4Եւ մինչ նրանք զարմացած էին այդ բանի վրայ, ահա լուսաւոր զգեստներով երկու մարդիկ հասան նրանց մօտ: »
«23եւ նրա մարմինը չէին գտել. նրանք եկան եւ ասացին, թէ նաեւ մի տեսիլ էլ էին տեսել հրեշտակների, որոնք ասում էին նրա մասին, թէ կենդանի է□»
«2Իսկ նա պատասխան տուեց եւ ասաց նրանց.»
«7Եւ իսկոյն գնացէ՛ք, ասացէ՛ք նրա աշակերտներին, թէ յարութիւն առաւ. եւ ահա նա ձեզնից առաջ գնում է Գալիլիա. այնտեղ նրան կը տեսնէք: Ահա ասացի ձեզ»□»
«6Եւ նա ասաց նրանց. «Մի՛ վախեցէք, դուք Յիսուսին էք փնտռում՝ խաչուած Նազովրեցուն. նա յարութիւն առաւ, այստեղ չէ: Ահաւասիկ այն տեղը, ուր նրան դրել էին:»
«5Եւ երբ կանայք զարհուրեցին ու իրենց երեսը գետին խոնարհեցրին, մարդիկ ասացին. «Ինչո՞ւ ողջին մեռելների մէջ էք փնտռում:»
□ **Ոչ.** Մարիամը որ ոքի չհանդիպեց և վերադարձավ ասելով. “Նրանք տարել են Տիրոջը գերեզմանից և մենք չգիտենք, թե որտեղ են նրանք դրել նրան:» (Հովհաննես 20:2)
«2Ապա վազում է եւ գալիս Սիմոն Պետրոսի եւ այն միւս աշակերտի մօտ, որին Յիսուս սիրում էր, ու նրանց ասում է. «Տիրոջը վերցրել են գերեզմանից, եւ չգիտենք, թէ ո՛ւր են դրել նրան»□»

87. Ե՞րբ Մարիամ Մարգդաղենացին, առաջին անգամ հանդիպեց հարություն առած Հիսուսին: Եվ ինչպե՛ս նա արձագանքեց:

 **Մարիամը և մյուս կանայք հանդիպեցին Հիսուսին, երբ վերադառնում էին գերեզմանից, որը այցելեցին առաջին և միակ անգամ: Նրանք փարվեցին նրա ոտքերին և երկրպագեցին նրան**: (Մատթեոս 28: 9)

«9Եւ յանկարծ Յիսուս նրանց դիմացը ելաւ ու ասաց՝ ողջո՛յն ձեզ. եւ նրանք մօտենալով՝ նրա ոտքերին փարուեցին ու երկրպագեցին նրան:»

 **Գերեզմանի երկրորդ այցելության ժամանակ, Մարիամը հանդիպեց Հիսուսին, անմիջապես դուրսը: Երբ նա տեսավ Հիսուսին, նա նրան չճանաչեց: Նա սխալմամբ կարծեց, որ նա այգեպանն է: Նա դեռ կարծում էր, որ Հիսուսի մարմինը հանգստանում էր որևէ տեղ և նա պահանջում էր իմանալ թե որտեղ: Սակայն, երբ Հիսուսը ասաց նրա անունը, նա անմիջապես ճանաչեց նրան և կոչեց նրան «Ուսուցիչ»: Հիսուսն ասաց նրան, "Մի մոտեցիր ինձ…»** (Հովհաննես 20:11-17)

«11Բայց Մարիամը կանգնած էր գերեզմանի դուրսը ու լաց էր լինում. եւ մինչ դեռ լաց էր լինում, կռացաւ դէպի գերեզմանը» [12]եւ տեսաւ երկու հրեշտակներ՝ սպիտակների մէջ, որոնք նստել էին՝ մէկը՝ սնարին, եւ միւսը՝ ոտքերի մօտ, այնտեղ, ուր Յիսուսի մարմինն էր եղել: [13]Եւ նրան ասացին. «Ո՛վ կին, ինչո՞ւ ես լալիս»☐ Նա նրանց ասաց. «Որովհետեւ իմ Տիրոջը գերեզմանից վերցրել են, եւ չգիտեմ՝ նրան ուր են դրել»☐ [14]Երբ այս ասաց, դէպի յետեւի կողմը դարձաւ եւ տեսաւ Յիսուսին, որ կանգնած էր. բայց չէր իմանում, թէ Յիսուսն



է:[15]Յիսուս նրան ասաց. «Ո՛վ կին, ինչո՞ւ ես լալիս, ո՞ւմ ես փնտռում»□ Նրան այնպէս թուաց, թէ պարտիզպանն է. եւ ասաց նրան. «Տէ՛ր, եթէ դու ես նրան վերցրել, ասա՛ ինձ՝ ուր ես դրել նրան, որպէսզի ես նրան վերցնեմ»□ [16]Յիսուս նրան ասաց՝ Մարիա՛մ: Եւ նա դարձաւ ու եբրայերէն նրան ասաց՝ Ռաբբունի՛ (որ թարգմանւում է՝ վարդապետ)□[17]Յիսուս նրան ասաց. «Ինձ մի՛ մօտեցիր, քանի որ դեռ Հօրս մօտ չեմ բարձրացել. ուրեմն գնա՛ դու իմ եղբայրների մօտ ու նրանց ասա՛, որ ես բարձրանում եմ դէպի իմ Հայրը եւ ձեր Հայրը, դէպի իմ Աստուածը եւ ձեր Աստուածը»□»

88. Ի՞նչ հրահանգներ տվեց Հիսուսը իր աշակերտներին:

□ «**Ասեք իմ եղբայրներին գնալ Գալիլեա և այնտեղ նրանք կտեսնեն ինձ**» (Մատթեոս 28:10)

«10Այն ժամանակ Յիսուս նրանց ասաց. «Մի՛ վախեցէք. գնացէ՛ք ասացէք իմ եղբայրներին, որ գնան Գալիլիա եւ այնտեղ ինձ տեսնեն»□»

□ “**Գնացեք իմ եղբայրների մոտ և ասացեք նրանց: Ես բարձրանում եմ իմ Հոր և ձեր Հոր մոտ, իմ և ձեր Աստծո մոտ**:» (Հովհաննես 20:17)

«17Յիսուս նրան ասաց. «Ինձ մի՛ մօտեցիր, քանի որ դեռ Հօրս մօտ չեմ բարձրացել. ուրեմն գնա՛ դու իմ եղբայրների մօտ ու նրանց ասա՛, որ ես բարձրանում եմ դէպի իմ Հայրը եւ ձեր Հայրը, դէպի իմ Աստուածը եւ ձեր Աստուածը»□

89. Ե՞րբ աշակերտները վերադարձան Գալիլեա:

□ Անմիջապես, որովհետև երբ նրանք տեսան Հիսուսին Գալիլեայում, «**ոմանք կասկածեցին**» (Մատթեոս 28:17) Այս տեսակի անորոշությունը չպետք է լիներ:

«17Իսկ տասնմէկ աշակերտները գնացին Գալիլիա, այն լեռը, ուր Յիսուս իրենց հետ ժամադրուել էր□»

 **Ամենաքիչը քառասուն օր հետո: Այդ երեկո, աշակերտները դեռ Երուսաղեմում էին**: (Ղուկաս 24:33) **Հիսուսը երևաց նրանց այնտեղ և ասաց մնալ քաղաքում, մինչ նրանց վրա կիջնի երկնային հզորություն** (Ղուկաս 24:49 ) **Նա հայտնվում էր նրանց «քառասուն օրվա ընթացքում»** (Գործք 1:3) **և ասում էր նրանց չհեռանալ Երուսաղեմօից, այլ սպասել խոստմանը**... (Գործք 1:4)

«33Ապա անմիջապէս վեր կացան ու Երուսաղէմ վերադարձան եւ հաւաքուած գտան Տասնմէկին եւ նրանց հետ եղածներին:»

## 90. Ու՞մ վաճառեցին Հովսեփին Մադիանացիները:

 **«Իսմայելացիներին»** (Ծննդոց 37:28)

«28Այնտեղից անցնում էին մադիանացի վաճառականներ: Եղբայրները Յովսէփին քաշեցին-հանեցին հորից եւ քսան դահեկանով վաճառեցին իսմայէլացիներին□»

 «**Պետափրեսին, Փարավոնի ներքինիին** » (Ծննդոց 37:36)

«36Իսկ մադիանացիները Եգիպտոսում Յովսէփին վաճառեցին փարաւոնի դահճապետին՝ ներքինի Պետափրէսին□»

## 91. Ո՞վ բերեց Հովսեփին Եգիպտոս:

 **Իսմայելացինմերը գնեցին Հովսեփին և այնուհետ «տարան Հովսեփին Եգիպտոս**» (Ծննդոց 37:28-29)

«28Այնտեղից անցնում էին մադիանացի վաճառականներ: Եղբայրները Յովսէփին քաշեցին-հանեցին հորից եւ քսան դահեկանով վաճառեցին իսմայէլացիներին:



29Իսմայէլացիները Յովսէփին տարան Եգիպտոս: Ռուբէնը վերադարձաւ դէպի հորը եւ Յովսէփին հորի մէջ չգտաւ□»

 **«Մադիանացիները վաճառեցին նրան Եգիպտոսում»** (Ծննդոց 37:36)

«36Իսկ մադիանացիները Եգիպտոսում Յովսէփին վաճառեցին փարաւոնի դահճապետին՝ ներքինի Պետափրէսին□»

 **Հովսեփը ասաց իր եղբորը «Ես քո եղբայրն եմ, Հովսեփը, ում դուք վաճառեցիք Եգիպտոս»** (Ծննդոց 45:4)

«4Յովսէփն ասաց եղբայրներին. «Մօտեցէ՛ք ինձ»□ Նրանք մօտ գնացին: Յովսէփն ասաց. «Ես ձեր եղբայր Յովսէփն եմ, որին դուք վաճառեցիք, որ Եգիպտոս տանեն:»

92. Արդյո՞ք Աստված զղջում է:

 **Այո "Տիրոջ խոսքը եկավ Սամուելին. «Ես զղջում եմ, որ Սավուղին Արքա եմ օծել... »** (Թագավորաց 15:10 մինչ11)

«10Տէրը խօսքն ուղղեց Սամուէլին՝ ասելով. «Զղջացել եմ, որ թագաւոր եմ օծել Սաւուղին, քանզի ինձնից շուռ է եկել եւ իմ խօսքերը չի պահել»□

 **Ոչ. Աստված «չի ստի կամ զղջա, քանի որ նա մարդ չէ, որ կարողանա զղջալ»** (Թագավորաց Ա 15:29)

«29Իսրայէլը երկու մասի է բաժանուելու, եւ Տէրն իր խօսքից յետ չի դառնալու ու չի զղջալու, քանզի նա մարդ չէ, որ զղջայ:»

 **Այո "Եվ Տերը զղջաց, որ օծել է Սավուղին Արքա Իսրայելի վրա »** (Թագավորաց Ա 15:35)

«35Սամուէլը մինչեւ իր մահուան օրը այլեւս չտեսաւ Սաւուղին, քանզի Սամուէլը Սաւուղի համար սուգ էր անում: Եւ Տէրը զղջացել էր, որ Սաւուղին թագաւոր էր օծել Իսրայէլի վրայ□»

Հաշվի առեք, որ վերոհիշյալ բոլոր մեջբերումները նույն գրքի, նույն գլխից են: Որպես լրացում, Աստվածաշունչը ցույց է տալիս, որ Աստված զղջում է այլ պարագաներում.

1. "**Տերը զղջում էր, որ արարեց մարդուն** » (Ծննդոց 6:6) «**Ես զղջում եմ, որ ես արարել եմ նրանց**:» (Ծննդոց 6:7)

«6զղջաց Աստուած, որ մարդ է ստեղծել երկրի վրայ, եւ տրտմեց իր հոգու խորքում□»

«7Տէր Աստուած ասաց. «Երկրի երեսից վերացնելու եմ իմ ստեղծած ամէն մի էակ՝ մարդուց մինչեւ անասուն եւ սողուններից մինչեւ երկնքի թռչունները, որովհետեւ զղջացել եմ, որ ստեղծել եմ նրանց»□

2. "**Եվ Տերը զղջաց չարիքի համար, որ սպառնում էր պատճառել իր մարդկանց**:» (Ելք 32:14)

«14Եւ Տէրը հրաժարուեց պատճառել այն չարիքները, որոնցով սպառնում էր պատժել ժողովրդին□»

3. Եվ շատ այսպիսի մեջբերումներ:

93. Աստվածաշունչը ասում է, որ Մովսեսի և Ահարոնի ներկայացրած ամեն հրաշքի դիմաց, մոգերը նույնն էին անում իրենց զաղտնի արվեստով: Այնուհետ գալիս էր հետևյալ հրաշքը.

□ **Մովսեսը և Ահարոնը դարձրեցին ամբողջ մատչելի ջուրը արյան**: (Ելք 7:20-21)

«20Մովսէսն ու Ահարոնը արեցին այնպէս, ինչպէս որ իրենց պատուիրել էր Տէրը. փարաւոնի ու նրա պաշտօնեաների առաջ Ահարոնը վեր բարձրացնելով իր գաւազանը՝ հարուածեց գետի ջրին եւ գետի բոլոր ջրերը վերածեց արեան□» 21Գետում եղած ձկները սատկեցին, գետը նեխեց,

եւ եգիպտացիները չէին կարողանում գետից ջուր խմել: Եգիպտացիների ամբողջ երկրում արիւն էր□»

 **Մոգերը նույնը արեցին** (Ելք 7:22) **Այս անհնարին է, քանի որ չէր կարող ջուր մնացած լինել**:

«22Իրենց կախարդութեամբ նոյնն արեցին նաեւ եգիպտացի մոգերը: Կարծրացաւ փարաւոնի սիրտը, եւ, ինչպէս որ ասել էր Տէրը, նա չլսեց նրանց:»

94. Ո՞վ սպանեց Գողիաթին:

 **Դավիթը** (Թագավորաց Ա 17:23, 50)

«23Մինչ նա խօսում էր, այլազգիների ճակատից դուրս եկաւ յամինացի այն փղշտացին, որի անունն էր Գողիաթ: Նա գէթացի էր: Նա կրկնեց նոյն խօսքերը, եւ Դաւիթը լսեց դրանք□»

«50Այսպիսով Դաւիթը պարսատիկով ու քարով յաղթեց այլազգուն, հարուածեց ու սպանեց նրան□»

 **Եղեանան** (Թագավորաց Բ 21:19)

«19Դարձեալ պատերազմ եղաւ Ռոբում այլազգիների դէմ, եւ բեթղեհէմացի Արիոդիմի որդի Եղէանան սպանեց գեթացի Գողիաթին, որի նիզակի բռնակը ոստայնանկների գլան էր յիշեցնում□»

95. Ո՞վ սպանեց Սավուղին:

 **«Սավուղը վերցրեց իր իսկ սուրը և ընկավ դրանից…Այսպիսով, Սավուղը մահացավ**…» (Թագավորաց Ա 31:4-6)

«4Սաւուղն ասաց իր կապարճակրին. «Սուրդ մերկացրո՛ւ եւ դրանով ինձ մահացրու խոցի՛ր: Չլինի, թէ անթլփատները գան, ինձ խոցոտեն ու ծաղր ու ծանակի ենթարկեն»□ Կապարճակիրը չուզեց այդ անել, քանզի սաստիկ վախեցել

էր□ 5Սաւուղն առաւ իր սուրը եւ իրեն նետեց դրա վրայ: Երբ կապարճակիրը տեսաւ, թէ Սաւուղը մեռաւ, ինքը եւս իրեն նետեց սրի վրայ ու նրա հետ մեռաւ:6Մեռան Սաւուղը, իր երեք որդիներն ու իր կապարճակիրը. նրա բոլոր մարդիկ նոյն օրը միասին մեռան:»

□ **Ամաղեկացին դաժանաբար սպանեց նրան** (Թագաւորաց Բ 1:1-16)

«[1]Սաւուղի մահուանից եւ ամաղէկացիներին կոտորելուց յետոյ Դաւիթը վերադարձաւ եւ երկու օր մնաց Սիկեղակում: [2]Երրորդ օրը Սաւուղի բանակատեղիից մարդ եկաւ, որի հագուստները պատառոտուած էին, իսկ գլխին հող էր ածուած: Երբ նա Դաւթի մօտ մտաւ, գետին ընկաւ ու խոնարհուեց նրա առաջ: [3]Դաւիթը հարցրեց նրան. «Որտեղի՞ց ես գալիս»□ Նա պատասխանեց. «Փախել եմ Իսրայէլի բանակատեղիից»□ [4]Դաւիթն ասաց նրան. «Ի՞նչ է պատահել, պատմի՛ր ինձ»□ Մարդն ասաց. «Ժողովուրդը պատերազմի դաշտից փախաւ, շատերը վիրաւոր ընկան ու մեռան: Մեռան նաեւ Սաւուղն ու Յովնաթանը»□ [5]Դաւիթն իրեն լուր բերող երիտասարդին հարցրեց. «Ի՞նչ գիտես, որ Սաւուղն ու նրա որդի Յովնաթանը մեռան»□[6]Լուր բերող երիտասարդն ասաց. «Դիպուածով Գեղբուա լերան վրայ էի գտնւում եւ ահա տեսայ, որ Սաւուղն ընկել էր իր նիզակի վրայ, եւ թշնամու մարտակառքերն ու հեծեալների զօրավարները հասել էին նրան: Նա յետ նայեց եւ ինձ տեսնելով՝ իր մօտ կանչեց:[7]Ասացի. «Ահա այստեղ եմ»□ [8]Նա ասաց ինձ. «Ո՞վ ես դու»□ Ասացի՝ «Ամաղէկացի եմ»□ [9]Նա ասաց ինձ. «Խոցի՛ր ու սպանի՛ր ինձ: Խաւարն է պատել ինձ, բայց շունչս դեռ վրաս է»□«[10]Խոցեցի ու սպանեցի նրան, որովհետեւ գիտէի, որ

նիզակի վրայ ընկնելուց յետոյ չէր ապրելու: Առայ նրա գլխից թագը, ապարանջանները՝ նրա բազկից եւ դրանք բերեցի այստեղ՝ իմ տիրոջը»□ [11]Դաւիթն իր հագուստները բռնելով՝ պատառոտեց: Իրենց հագուստները պատառոտեցին նաեւ նրա մօտ գտնուող մարդիկ: [12]Նրանք ողբացին, լաց եղան ու մինչեւ երեկոյ ծոմ պահեցին սրով ընկած Սաւուղի, նրա որդի Յովնաթանի, Յուդայի երկրի ժողովրդի ու Իսրայէլի տան համար: [13]Դաւիթն ասաց իրեն լուր բերող երիտասարդին. «Որտեղի՞ց ես դու»□ Մարդն ասաց. «Մի պանդուխտ ամաղէկացու որդի եմ ես»□ [14]Դաւիթն ասաց նրան. «Ինչպէ՞ս չվախեցար ձեռք բարձրացնել ու սպանել Տիրոջ օծեալին»□ [15]Դաւիթն իր ծառաներից մէկին կանչելով՝ ասաց. «Մօտեցի՛ր ու սպանի՛ր սրան»□ Նա հարուածեց, ու մարդը մեռաւ: [16]Դաւիթն ասաց նրան. «Քո արիւնը թող քո գլխին լինի, քանզի քո բերանը քո մասին վկայութիւն տուեց՝ ասելով. «Ես սպանեցի Տիրոջ օծեալին»»□

96. Արդյո՞ք յուրաքանչյուր մարդ մեղք է գործում:

□ **Այո. “Չկա մեկը, որ մեղք չի գործում »** (Թագավորաց Գ 8:46; տես նույնպես Մնացորդաց Բ 6:36; Առակներ 20:9; Ժողովող 7:21 և Հովհաննես Ա 1:8, 10)

«46Եթէ մեղանչեն քո դէմ (քանզի չկայ մարդ, որ չմեղանչի), եւ նրանց վրայ բարկանաս ու նրանց մատնես թշնամիների ձեռքը, եւ գերեվարողները նրանց գերեվարեն դէպի թշնամու հեռաւոր կամ մօտիկ երկիրը,»

«36ապա երկնքից կը լսես նրանց պաղատանքներն ու աղօթքները եւ կը պաշտպանես նրանց իրաւունքը□»

«9Ո՞վ կարող է պարծենալ, թէ ինքը սուրբ սիրտ ունի, կամ ո՞վ կը համարձակուի ասել, թէ ինքը զերծ է մեղքերից:»

«21Երկրի վրայ չկայ արդար մի մարդ, որ բարի գործ անի եւ չմեղանչի:»
«8Եթէ ասենք՝ «Մենք ոչ մի մեղք չունենք», մենք մեզ ենք խաբում, եւ ճշմարտութիւն չկայ մեր մէջ□»
«10Եթէ ասենք՝ «Չենք մեղանչել», սուտ ենք հանում Նրան, եւ Նրա խօսքը մեր մէջ չէ□»
 **Ոչ, Իրական Քրիստոնյան չի կարող մեղք գործել, որովհետև նրանք Աստծո զավակներն են:"Յուրաքանչյուրը, ով հավատում է, որ Հիսուսը Քրիստոսն է, Աստծո զավակն է**:» (Հովհաննես Ա 5:1) **"Մեզ պետք է անվանեն Աստծո զավակներ և այդպիսին ենք մենք:»** (Հովհաննես Ա 3:1 ) **«Նա, ով սիրում է, ծնված է Աստծոց»** (Հովհաննես Ա 4:7) **"Աստծոց ծնված ոչ մեկը մեղք չի գործում, քանի որ Աստվածային բնույթը նրա մեջ է, և նա չի կարող մեղք գործել, որովհետև նա ծնված է Աստծոց** » (Հովհաննես Ա 3:9 ) Այնուհետ, կրկին Այո. "**Եթե մենք ասենք, որ մենք մեղք չունենք, մենք ստում ենք ինքներս մեզ և ճշմարտությունը մեր մեջ չէ**:» (Հովհաննես Ա 1:8)
«1Ամէն որ, ով հաւատում է, թէ Յիսուսն է Քրիստոսը, Աստծուց է ծնուած. եւ ամէն որ, ով սիրում է ծնունդ տուողին, սիրում է նաեւ նրանից ծնուածին:»
«1Տեսէ՛ք ինչպիսի սէր շնորհեց մեզ Հայրը, որպէսզի մենք կոչուենք Աստծու որդիներ. աշխարհը մեզ չի ճանաչում նրա համար, որ նրան էլ չճանաչեց:»
«7Սիրելինե՛ր, սիրենք միմեանց, քանի որ սէրն Աստծուց է. եւ ամէն որ, ով սիրում է, Աստծուց է ծնուած եւ ճանաչում է Աստծուն:»

«9Ամէն որ, ով Աստծուց է ծնուած, մեղք չի գործում, որովհետեւ Նրա սերմը մնում է նրա մէջ. չի էլ կարող մեղանչել, որովհետեւ Աստծուց է ծնուած:»
«8Եթէ ասենք՝ «Մենք ոչ մի մեղք չունենք», մենք մեզ ենք խաբում, եւ ճշմարտութիւն չկայ մեր մէջ:»

97. Ո՞վ է կրում, ում բեռը:

□ "**Կրեք մեկը մյուսի բեռը և այսպիսով լրացրեք Քրիստոսի օրենքը**:» (Գաղատացիներ 6:2)
«2Միմեանց բեռը կրեցէ՛ք եւ այդպիսով կատարեցէ՛ք Քրիստոսի օրէնքը:»

□ «**Յուրաքանչյուրը պետք է կրի իր իսկ բեռը**» (Գաղատացիներ 6:5)
«5որովհետեւ իւրաքանչիւր ոք իր բեռն է կրելու:»

98. Քանի՞ աշակերտների երևաց Հիսուսը իր հարությունից հետո:

□ **Տասներկու** (Կորնթացիներ Ա 15:5)
«5եւ երեւաց Կեփասին եւ ապա՝ Տասներկուսին»

□ **Տասնմեկ** (Մատթեոս 27:3-5 և Գործք 1:9,26, տես նույնպես Մատթեոս 28:16, Մարկոս 16:14, Ղուկաս 24:9, Ղուկաս 24:33)
«3Այն ժամանակ Յուդան, որ Յիսուսին մատնել էր, տեսնելով, որ Յիսուս դատապարտուեց, զղջաց, արծաթ դրամները վերադարձրեց քահանայապետներին եւ ժողովրդի ծերերին ու ասաց. 4«Մեղանչեցի, որովհետեւ արդար արիւն մատնեցի»□ Իսկ նրանք ասացին. «Մեր հոգը չէ, դո՛ւ գիտես»□5Եւ արծաթ դրամները նետեց տաճարի մէջ եւ հեռացաւ ու գնաց ինքն իրեն կախեց□»
«9Եւ երբ այս խօսքերն ասաց, մինչ նրանք դեռ նայում էին, երկինք վերացաւ, եւ ամպը նրան ծածկեց նրանց աչքերից□»

«26Եւ նրանց համար վիճակ գցեցին. վիճակը ելաւ Մատաթիային, եւ սա դասուեց տասնմէկ առաքեալների հետ□»

«16Եւ նրանք դրամն առնելով՝ արեցին այնպէս, ինչպէս որ իրենց սովորեցրել էին: Եւ այս զրոյցը տարածուած է հրեաների մէջ մինչեւ այսօր:»

«14Յետոյ, մինչ Տասնմէկը սեղան էին նստել, Յիսուս նրանց երեւաց եւ յանդիմանեց նրանց իրենց անհաւատութեան եւ խստասրտութեան համար, որովհետեւ չէին հաւատացել նրանց, որոնց ինքը երեւացել էր՝ մեռելներից յարութիւն առած:»

«9Եւ վերադարձան ու պատմեցին այս ամէնը Տասնմէկին եւ բոլոր միւսներին»

«33Ապա անմիջապէս վեր կացան ու Երուսաղէմ վերադարձան եւ հաւաքուած գտան Տասնմէկին եւ նրանց հետ եղածներին:»

99. Որտե՞ղ էր Հիսուսը իր մկրտությունից երեք օր անց:

□ **Մկրտությունից հետո «հոգին» անմիջապես հանեց նրան անապատ: Եվ նա մնաց այնտեղ քառասուն օր...** (Մարկոս 1:12-13)

«12Եւ անմիջապէս Հոգին նրան հանեց տարաւ դէպի անապատ□» «13Եւ նա այնտեղ էր քառասուն օր՝ փորձուելով սատանայից: Եւ նա գազանների հետ էր, իսկ հրեշտակները ծառայում էին նրան□»

□ **Իր մկրտության հաջորդ օրը, Հիսուսը ընտրեց երկու աշակերտ: Երկրորդ օրը Հիսուսը գնաց Գալիլեա, ևս երկու աշակերտ: Երրորդ օրը Հիսուսը Գալիլեայի Քանայի**

**հարսանեկան հանդիսության էր մասնակցում**: (Տես Հովհաննես 1:35; 1:43; 2:1-11)

«35Հետեւեալ օրը դարձեալ այնտեղ կանգնած էր Յովհաննէսը. նաեւ՝ իր աշակերտներից երկուսը□»

«43Յաջորդ օրը Յիսուս որոշեց Գալիլիա մեկնել. գտաւ Փիլիպպոսին ու նրան ասաց. «Արի՛ իմ յետեւից»□»

«[1]Գալիլիա հասնելու երրորդ օրը Կանա քաղաքում հարսանիք կար: Եւ Յիսուսի մայրը այնտեղ էր:[2]Հարսանիքի հրաւիրուեցին նաեւ Յիսուս եւ իր աշակերտները: [3]Եւ երբ գինին պակասեց, մայրը Յիսուսին ասաց. «Գինի չունեն»□ [4]Եւ Յիսուս նրան ասաց. «Ի՞նչ ես ուզում ինձնից, ո՛վ կին, իմ ժամանակը դեռ չի հասել»□ [5]Նրա մայրը սպասաւորներին ասաց. «Ինչ որ ձեզ ասի, արէ՛ք»□[6]Այնտեղ կային քարէ վեց թակոյկներ՝ հրեաների սովորութեան համաձայն մաքրուելու համար. նրանցից իւրաքանչիւրը շուրջ հարիւր լիտր տարողութիւն ունէր:[7]Յիսուս նրանց ասաց. «Լցրէ՛ք այդ թակոյկները ջրով»□ Եւ լցրին բերնէբերան□ [8]Եւ ասաց նրանց. «Հիմա վերցրէ՛ք եւ տարէ՛ք սեղանապետին»□ Եւ նրանք տարան:[9]Եւ երբ սեղանապետը ճաշակեց գինի դարձած ջուրը ու չէր իմանում, թէ որտեղից է (բայց սպասաւորները, որոնք ջուր լցրին, գիտէին),[10]խօսեց փեսայի հետ ու ասաց. «Ամէն մարդ նախ ընտիր գինին է մատուցում, եւ երբ հարբած են, այն ժամանակ՝ վատը: Իսկ դու ընտիր գինին մինչեւ հիմա պահել ես»□[11]Յիսուս այս առաջին նշանն արեց Գալիլիայի Կանա քաղաքում որպէս սկիզբը նշանների եւ յայտնեց իր փառքը, ու նրա աշակերտները հաւատացին նրան□»

100.Արդյո՞ք մանուկ Հիսուսի կյանքին վտանգ էր սպառնում Երուսաղեմում:

 **Այո, այսպիսով Հովսեփը փախավ նրա հետ Եգիպտոս և մնաց այնտեղ մինչ Հերովդեսի մահը:** (Մատթեոս 2:13,23)
«13Եւ երբ նրանք այնտեղից գնացին, ահա Տիրոջ հրեշտակը երազի մէջ երեւաց Յովսէփին ու ասաց. «Վե՛ր կաց, վերցրո՛ւ այդ մանկանը եւ նրա մօրը ու փախի՛ր Եգիպտոս. եւ այնտեղ մնա՛ մինչեւ որ քեզ ասեմ. քանի որ Հերովդէսը փնտռում է այդ մանկանը կորստեան մատնելու համար»
«23եւ եկաւ բնակուեց Նազարէթ կոչուող քաղաքում, որպէսզի կատարուի մարգարէների խօսքը, թէ՝ Նազովրեցի պիտի կոչուի»
 **Ոչ, Ընտանիքը ոչ մի տեղ չփախավ: Նրանք հանգստորեն ներկայացրեցին երեխային Երուսաղեմի տաճար ըստ Հրեական ավանդույթի և վերադարձան Գալիլեա**: (Ղուկաս 2:21-40)
«21Եւ երբ ութ օրերը լրացան, եւ նա թլփատուեց, նրա անունը Յիսուս դրուեց, ինչպէս հրեշտակի կողմից կոչուել էր, երբ դեռ չէր յղացուել մօր որովայնում:22Երբոր նրանց սրբագործման օրերը լրացան, Մովսէսի Օրէնքի համաձայն՝ նրան Երուսաղէմ տարան՝ Տիրոջը ներկայացնելու համար,«[23]ինչպէս գրուած էր Տիրոջ Օրէնքում. «Ամէն արու զաւակ, որ արգանդ է բացում, Տիրոջ համար սուրբ պիտի կոչուի»[24]Եւ Տիրոջ Օրէնքում ասուածի համաձայն՝ ընծայ պէտք է տալ մի զոյգ տատրակ կամ աղաւնու երկու ձագ:[25]Արդ, Երուսաղէմում Սիմէոն անունով մի մարդ կար, եւ այդ մարդը արդար ու աստուածավախ էր եւ ակնկալում էր Իսրայէլի մխիթարութիւնը. եւ Սուրբ Հոգին էր նրա մէջ:[26]Եւ Սուրբ Հոգուց հրամայուած էր իրեն մահ չտեսնել, մինչեւ որ տեսնէր Տիրոջ Օծեալին:[27]Նա Հոգով առաջնորդուած՝ եկաւ

տաճարը, եւ երբ ծնողները բերին Յիսուս մանկանը՝ նրա վրայ կատարելու ինչ որ օրէնքի սովորութեան համաձայն էր,[28]Սիմէոնը նրան իր գիրկն առաւ, օրհնեց Աստծուն եւ ասաց.[29]«Այժմ, ո՛վ Տէր, խաղաղութեա՛մբ արձակիր քո ծառային՝ ըստ քո խօսքի.[30]որովհետեւ աչքերս տեսան փրկութիւնը քո,[31]որ պատրաստեցիր բոլոր ժողովուրդների առաջ,[32]լոյս, որ կը լինի յայտնութիւն հեթանոսների համար եւ փառք՝ Իսրայէլի քո ժողովրդի համար»: [33]Եւ նրա հայրն ու մայրը զարմացած էին այն խօսքերի համար, որ ասում էին նրա մասին:[34]Սիմէոնը նրանց օրհնեց եւ ասաց նրա մօրը՝ Մարիամին. «Ահա՛ սա նա է, որ պատճառ է դառնալու Իսրայէլի մէջ շատերի անկման ու բարձրացման եւ նշան՝ հակառակութեան□ «[35]Իսկ քո հոգու միջով էլ սուր պիտի անցնի, որպէսզի բազում սրտերի խորհուրդներ յայտնի դառնան»□[36]Եւ այնտեղ կար մի մարգարէուհի՝ Աննա անունով՝ Փանուէլի դուստրը, Ասերի ազգատոհմից. սա տարիքով շատ առաջացած էր եւ ամուսնու հետ միայն եօթը տարի էր ապրել՝ սկսած իր կուսութիւնից:[37]Նա մօտ ութսունչորս տարեկան մի այրի էր, որ չէր հեռանում տաճարից, այլ ծոմապահութեամբ եւ աղօթքով գիշեր-ցերեկ ծառայում էր Աստծուն:[38]Սա եւս նոյն ժամին վեր կացաւ եկաւ, գոհութիւն էր մատուցում Տիրոջը եւ խօսում էր մանկան մասին բոլոր նրանց հետ, որոնք Երուսաղէմի փրկութեանն էին սպասում:[39]Եւ երբ ամէն ինչ կատարեցին Տիրոջ Օրէնքի համաձայն, վերադարձան Գալիլիա, իրենց քաղաքը՝ Նազարէթ□[40]Եւ մանուկը աճում ու զօրանում էր՝ լի իմաստութեամբ. եւ Աստծու շնորհները նրա վրայ էին□»

101. Երբ Հիսուսը քայլեց ջրի վրա, ինչպե՞ս աշակերտները արձագանքեցին:

 **Նրանք երկրպագեցին նրան ասելով. «Իրավմամբ, դու Աստծո Որդին ես:»** (Մատթեոս 14:33)

“33Եւ նրանք, որ նաւակի մէջ էին, մօտեցան, երկրպագեցին նրան ու ասացին. «Արդարեւ Աստծու Որդին ես դու»☐»

 **Նրանք զար ացած էին, “քանի որ նրանք չէին հասկանում նկանակները, սակայն նրանց սրտերը կարխրացել էին:»** (Մարկոս 6:51-52)

“51որովհետեւ ամէնքը տեսան նրան եւ խռովուեցին: Եւ նա իսկոյն խօսեց նրանց հետ ու ասաց. «Քաջալերուեցէ՛ք, ե՛ս եմ, մի՛ վախեցէք»☐52Եւ նա նաւակ բարձրացաւ նրանց մօտ, եւ քամին դադարեց: Եւ նրանք առաւել եւս ապշել էին իրենց մտքում ու սաստիկ զարմանում էին,:»



